Մ. Տ. ՇԻՈՏ

# ՔՐԴԵՐԸ ՏԱՃԿԱՑ-ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

(Ազգագրական Նիւթեր)

Հատոր Ա.

Ս.-ՊԵՏԵՐԲՈՒՐԳ
«ՊՈՒՇԿԻՆԵԱՆ ՏՊԱՐԱՆ»
1905

Խորին յարգանօք կընուիրեմ

«Խունխորի» և այլոց հեղինակ Մեծար-
գոյ Պարոն

ՅԱԿՈԲ ՂԱԶԱՐԵԱՆԻՆ

Ա. Տ. Ճւոտ

# ՔՐԴԵՐԸ ՏԱՃԿԱՑ-ՀԱՅԱՍ-ՏԱՆՈՒՄ

## (ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ)

*Հատոր Ա.*

~~~~~

## ՆԱԽԵՐԳԱՆՔ

*Տաճկական Հայաստանի աշխարհագրական դիրքը և դարաւոր հայրենակցութիւնը Հայ և Քիւրդ* (курдъ—kurd—ko-ord) *տարրերի մէջ ստեղծել են յարաբերական այնպիսի գծեր, որոնք այդ երկու տարրերին շատ բանով դարձրել են համանման, միատիպ։ Կենցաղավարական պայմանները, փոխադարձաբար, այնպիսի ազ-*
~~~~~

դեցութիւն են գործել յիշեալ ժողովուրդների հոգուն ու մարմնին վրայ, որ այսօր Տաճկահայ ազգագրութեան մասին խօսելիս ես կըրդժուարանամ նոյնիսկ հաւատալ, թէ այդ կարող է կատարեալ լինել առանց քրդական ազգագրութեան։

Հայ և Քիւրդ տարրերը դարերէ հետէ կապրին կողք կողքի՝ վարելով յաճախ միանման քաղաքական ու տնտեսական կեանք, իւրաքանչիւրի մայրենի լեզուին հաւասար սովորելով ու գործածելով միմեանց բարբառը. իրաւաբանական սովորութիւններով նոյնպէս, համարեա, միատիպ։ Նոյնիսկ ընտանեկան, խնամիական կապեր հաստատելով իրար մէջ. յիշատակութեան արժանի է և յաճախադէպ՝ նւիրական համարւող քիրւայութիւնը (կնքահայր, քաւոր), որ ենթականերին այնպէ՜ս կըմօտեցնէ իրար։ Հապա այն փոխադարձ գիտակցութի՜ւնը, թէ միևնոյն պապերէն սերւած եղբայրներ են իրենք, ինչպէս նաև նոյն և նման սրբա-

դան աւանդութիւններով ու առասպելներով և հաւատալիքներով օժտուած ենթադրելով իրար։ Ու այդ «միևնոյն պապերի թոռներն ու ծոռները» քաղաքական ու տնտեսական կեանքում, կարիքն ստիպած պահուն, ստէպ և վստահութեամբ միմեանց դրացիական օճաղին դիմելով։ Եւ այլն ևն։

Ահա թէ որպիսի հանգամանքներ համարձակութիւն տուին ինձ արտայայտելու վերոյգրեալ մտքերը։

Միւս կողմէն. ծնուած լինելով Տաճկական Հայաստանի քրդաշատ մի նահանգումը (Բալու-Տիգրիս) և 16 անմոռանալի՜, թանկագի՜ն տարիներ ապրած լինելով քրդերի մէջ—թէ՛ գիւղերում, թէ՛ Բալու քաղաքում, թէ ամարանոց-եայլաներում, թէ՛ սարերի վրայ, թէ՛ պատերազմական վայրերում . . . , — անջնջելիօրէն մեխուած, դրոշմուած են յիշողութեանս մէջ իմ սիրելի հայրենակից քրդերի կեանքէն բաւական բաներ, որոնց դրի առնելս ու

առանձին գրքերով հրատարակելու ոչ միայն անօգուտ չեմ գտնելու, այլ դեռ կը վստահանամ ասել, որ ներկայ և յետագայ աշխատութիւններս՝ իրենց վերին աստիճանի համառօտութեամբ ու երշգրտութեամբ ծառայելու են որպէս պատուական առաջծներ, քրդական կեանքը գիտականօրէն ուսումնասիրողների համար։

Ես կառաջնորդուեմ պրոֆէսոր Գրիգոր Խալաթեանցի կազմած «Հայ ազգագրութեան ծրագրով» որի մէջ թէև շատ հարցեր բոլորովին անպէտք են Քիւրդ ազգագրութեան համար, բայց յամենայն դէպս նա շատ կըդիւրացնէ բանասէրների գործը։

Ընթերցողներին դիւրութիւն տալու համար ես յարմար գտայ ամեն մի քրդերէն կամ տաճկերէն բառի մօտ, փակագծերի մէջ, դնել նոյն բառը ֆրանսերէն երբեմն և ռուսերէն տառերով ու հայերէն բացատրութիւնը. այլապէս պիտի ստիպուէի դնել գրքի յետևը առանձին

բառարան, որ աւելի անյարմար կըլինէր։ Ցաւ ի սիրտ պէտք է ասեմ, որ իննամեայ անմիջական բացակայութիւնս հայրենի-քէս շատ առարկաների անուններ մոռաց-րել է ինձ և այդ պատճառով էլ ստիպ-ւած եմ եղել քրդերէնի փոխարէն դնել տաճկերէն կամ ռուսերէն իհարկէ բա-ցատրութեամբ։

Մի խօսքով ես աշխատել եմ, որ ներ-կայ ուսումնասիրութիւնս մատչելի լինի բոլոր ընթերցող հասարակութեան թէ լեզուի և թէ ոճի կողմէն։

Ափսոս որ հնարաւորութիւն չու-նեցայ պատկերազարդ հրատարակելու, որով ընթերցողը ի մօտոյ հնարաւորու-թիւն կ'ունենար ծանօթանալու այս կամ այն իրի ձևին, կազմւածքին։ Պիտի ջա-նամ սակայն ամեն կերպ, որ յաջորդ հա-տորներում այդ պակասն էլ լրացւի։

Ի վերջոյ աւելորդ չեմ համարիր յարել, որ ներկայ աշխատութիւնս, աննշան փո-փոխութիւններով, այս տարի հրատարա-

կել է ռուսերէն լեզուով «Ռուսաց ԿԱՅ-ՍԵՐԱԿԱՆ Աշխարհագրական Ընկերութեան» Կովկասեան Բաժանմունքը, ուր ներկայացրել է Պ. Համբարձում Առաքելեանը։ Այդ գրքոյկին, որ գրական փանթոմիմայի խաղեր համար կրկրէ «Курды въ персіи» վերնագիրը, ի մեծ զարմանս իմ, ստորագրել է Պ. Հ. Առաքելեանը... որպէս հեղինակ։

Պ. Առաքելեանը, 1902 թուի ամառը, Անապայում, ինձ յայտնեց, որ գնալու է Համբուրգում գումարուելիք Արեւելագէտների ժողովին և կցանկայ ունենալ Քրրդական ազգագրութիւնը ժողովում կարդալու համար։ Ես պատրաստակամութիւն յայտնեցի՝ տալու մի համառօտ ուսումնասիրութիւն, ժողովում կարդալու և վերադարձնելու պայմանաւ։ Պ. Առաքելեանը վեր առաւ այդ աշխատութիւնս և ասաց.— Արեւելագէտների XII Միջազգային ժողովում կկարդամ այդ որպէս Ձեր աշխատութիւնը և յետու-

հետև էլ կըմիջնորդեմ ռուսաց. Կ. Աշխ. Ընկ. առաջ, որպէսզի նիւթականապէս հնարաւորութիւն տան Ձեզ շարունակելու այդ աշխատութիւնը և կազմելու քրդական կատարեալ ազգագրութիւնը, ապա կըվերադարձնեմ Ձեզ ձեր ձեռագիրը։

Այնուհետև անցան ամիսներ ու տարիներ և մենք մի քանի անգամներ հանդիպեցինք Պ. Առաքելեանին հետ «Մշակի» խմբագրատանը, Թիֆլիսում։ Չնայած իմ մի քանի պահանջին՝ վերադարձնելու ինձ ձեռագիրս (որի սևագրութիւնը չունէի, որովհետև հապճեպով էի կազմել և ժամանակ չէի ունեցել արտագրելու) Պ. Առաքելեանը «այսօր-վաղը» ասելով կը ձգձգէր։ Այս տարի մի անգամ էլ յայտնեց պարոնը, որ իմ աշխատութիւնս ներկայացրել է վերոյիշեալ Ընկ. Կովկ. բաժանմունքին հրատարակելու համար։ Վերջերս կատանամ այդ գրքոյկը և կը տեսնեմ, որ մեր կարճահասակ պարոնը

*փառաւորապէս տիրացել է նրան և ստորագրել* «А. А. Аракөлянъ»...

*Մի բան, որ մաղաչափ պատիւ բերել չէ կարող ինքն իրեն գրական գործչի տեղ դրած Պ. Առաքելեանին։ Ես դիմեցի պարոնին առանձին նամակով և բացատրութիւն պահանջեցի նրա այդպիսի վերաբերմունքի համար դէպի իմ սեպհականութիւնը. պարոնը փոխանակ արդարութեամբ խոստովանելու իրա մեղքը՝ տակաւին համարձակուել է, բոլորովին անտեղի և անիրաւացի, հայհոյել մի յայտնի հասարակական գործիչ-փիլիսոփայի, որի առջև լեզու իսկ չէ կարող թրջել որևէ Առաքելեան։ Մենք կըպահենք այդ* 7 *երեսանոց նամակ-հայհոյաբանութիւնը, որ կըկրէ «*28 *սեպտ.* 1904 *թ. թւականը և Հ. Առաքելեան» ստորագրութիւնը։*

*Մեղքի մէջ չիմնալու համար պէտք է յայտնեմ, որ Պ. Առաքելեանը* «Курды въ персіи» *գրքոյկում ունի մի քանի տող ինքնուրոյն գրուածք, այսինքն ինձմէ ա-*

ուածէն դուրս, որը սակայն երբէք իրաւունք չէր տար պարոնին հեղինակ կոչուելու։ Սակայն պարոնը այնքան էլ միամիտներէն կամ անհեռատեսներէն չէ. նա դիմել է մի քանի արդարացուցիչ (?) միջոցների.— Նախ՝ ծրովհետև Պ. Ալաքելեանը, իրա ատածին նայելով, գիտէ Պարսկաստանը աշխարհագրականապէս, ծատամբ և դուցէ ազգագրականապէս, հետևաբար և պարսկաստանում գտնուող քրդերի մասին էլ թերևս ունենայ մի փոքր ծանօթութիւն՝ վեր է կացել պարոնը և յիշելով ինչ որ ճանապարհորդութիւններ, բառեր, բառեր և էլի բառեր... իրան հոչակել ուսումնասիրող քրդական կեանքի։ Պարոնն ասում է, որ ինձմէ այդ նիւթերն ստանալէ առաջ «նոյն բէֆէրատը (հիմա (Курды въ персіи) կարդացի 1900 թ.ին Պարիզի կօնգրէսում, որ տպուած է... Նոյն րէֆէրատը տպուած է 1889 թ.ին «Ազգագրական Հանդէսի մէջ...», մի բան որ սուտ է ստով-գլխով...

*Երկրորդ՝ պարոնը զետեղել է յիշեալ գրքոյկում հետևեալ տողերը.*

„Затѣмъ, одинъ изъ моихъ знакомыхъ, посвятившій себя тоже спеціально изученію быта о жизни курдовъ въ Турецкой Арменіи, учитель Шводъ, доставилъ мнѣ въ прошломъ же году, **послѣ конгресса Оріенталистовъ** (*շարժեալ ուռւ. վերև ես նկատեցի, որ իմ աշխատութիւնս առաւ պարոնը ուղղակի այդ կոնգրէսում կարդալու նպատակով*) цѣнный матеріалъ, при сличеніи катораго съ собраннымъ мною матеріаломъ оказалось, что обычаи, нравы, бытовыя черты какъ у турецкихъ, такъ и у персидскихъ курдовъ почти ничѣмъ не отличаются. Матеріалъ Швода далъ мнѣ возможность расширить программу моихъ изслѣдованіи и представить уже Кавказскому Отдѣлу **Императорскаго** Русскаго Географическаго Общества болѣе полный и подробный очеркъ курдовъ къ этнографическомъ отношеніи.» *Որքան շնորհակալ պիտի լի-*

նէի, պարոն, եթէ նեղութիւն կրած չ՚լինէիք ձեր հեղինակութեան մէջ (?) այդքանն էլ յիշելու։

Երրորդ՝ բուն ազգագրական մասում կըտեսնեմ, որ Պ. Առաքելեանը նոյնիսկ քրդերէն լեզուով գրածս. դարձուածքները կը շահագործէ. մինչդեռ քրդական այն բարբառները, որ ես գործ եմ ածել այդ աշխատութեան մէջ՝ անծանօթ են պարոնին, եթէ նոյնիսկ ընդունենք, որ նա տեղեակ է պարսկաստանի քրդերի բարբառին. «...я былъ знакомъ съ мѣстнымъ языкомъ и условіями» կասէ պարոնը պարսկաստանի մասին գրելիս *)։ Իմ գործածած դըմըլերէնը (dəmeli) և գըրմանճերէնը (kərmandji) բոլորովին տարբեր են քրդական այն բարբառներէն, որոնք գործածական են Պարսկաստանում, Ռուսաստանում և Վասպուրականում։ Այդ բանը կը խոստովանի և յայտնի քրդագէտ Պ.

---

*) Տես. „Курды въ персіи“ երես 2.

Յակոբ Ղազարեանը։ Ասածներիս իբր ապացոյց բերեմ „курды въ персіи“ գրքէն իմ մի քանի խօսքերս.

ա. Венгъ даишъ=հրաւէր հարսանեաց.

բ. Бенну, лія=բաւ է, տօ.

գ. Эй, дости, кэйнэ этё броше мнѣ=Այ խնամի, ծախիր ինձ աղջիկդ.

դ. Keinéé khale éme be rako ethia=Աներոջս աղջիկը! եկ ննջիր այստեղ.

ե. Allah itchoun vannan, ki jené ema keïné bi=Յանուն Աստուծոյ կերդուեմ, որ իմ կինը կոյս էր.

զ. Keïne éteu halal nan vord ou*)=աղջիկդ հալալ հաց է կերել։ Բաւական են օրինակները։ Դրանք նախադասութիւններ են, որ Պ. Առաքելեանի պապն էլ լսած չէ թերեւս։ Բացի այդ՝ ես հաւատացած եմ, որ Պ. Առաքելեանը նոյնիսկ գըրմանճներէն քրդերէնը չ՚գիտէ, որովհետեւ այդ դրքոյկում գըրմանճի խօսքերն այլասերուած են, ուղղագրութեան աններելի սխալներ արած..., մի բան, որ

կապացուցանէ պ. Առաքելեանի տգիտութիւնը գըրմանճերէնում!

Առ այժմ ես կըբաւականանամ այսքանով, վստահ որ սիրելի ընթերցողն արդէն կազմեց մի փոքր գաղափար պ. Առաքելեանի վերաբերմունքի մասին դէպի ուրիշի սեպհականութիւնը։

Մ. Տ. Շւռտ

1904 Թ. Նոյեմբեր 13

Անափա

ՔՐԴԵՐԸ ՏԱՃԿԱՑ-ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ.

Ա.

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԵՒ ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ.



### 1. *Բնակութեան սահմանները և հայրենիքի գաղափարը.*

Տաճկա-Հայաստան ասելով մենք կը հասկանանք Վանի, Բաղէշի, Կարնոյ, Տիգրանակերտի, Խարբերդի և Սեբաստիայի նահանգները, ուր կը բնակին քրդերը: Միջագետքում, Կիլիկիայում, Պարսկաստանում և Կովկասում նոյնպէս կը բնակին որոշ թւով քրդեր:

Չ'նայած որ մի քանի նորաղոյն աշխարհացոյց տախտակներ փոքր Ասիայում ցոյց կուտան և՛ Քիւրդիստան (Kurdistan—Koordistan) անունով մի երկիր, բայց դա ոչ այլ ինչ է, եթէ ոչ Նոր-Հայաստանի մի հարազատ մասը. միայն անիծուած մետաղի և նոյնպէս անիծուած փոլիթիքայի շնորհիւ է տեղի ունեցել այդ բառախաղութիւնը… Այնպէս որ, խօսքս այսօրւայ մասին լինելով, «ստան» վերջաւորութեամբ բնորոշւող Քիւրդիստանը գոյութիւն չունի և չի էլ կարող ունենալ, որովհետև այսօր քրդեր ասելով մենք կըհասկանանք՝ բազմազան ցեղերի բաժանուած և բազմապիսի հանգամանքներով իրարմէ խորթացած (եթէ ընդունենք, որ նրանք բոլորը մի ժամանակ մի ամբողջութիւն, միաձոյլ մի ազգութիւն կըկազմէին), օտարացած և ընդհանուր ոչ մի ուշադրաւ ներքին կապ չունեցող, ուրոյն-ուրոյն ցեղեր, և ոչ թէ մի անբաժան ազգ, որ այսպէս թէ այնպէս իրաւատէր

չինել կարողանար այս կամ այն երկիրը իր հայրենիք անուանելու կամ դարձնելու։

Այդ կէտի մասին խօսելիս հետաքրքրական կըլինի, իհարկէ, քրդու իրա կարծիքը քրդական հայրենիքի մասին։

Ինչպէս պէտք էր սպասել՝ մեր հասկացած եղանակով հայրենիքի մասին քիւրդը ոչ մի հասկացողութիւն չունի։ Սեպհական հայրենիքի գաղափարը անմատչելի է քրդերին։

Իրաւ է, որ քրդական բառբառներն ունին իսկապէս հայրենիք նշանակող օտարահնչիւն վաթան կամ վէյթան (veïtan—вейтанъ) բառը. սակայն պէտք է ասել, որ քիւրդն այդ բառով կըհասկանայ ուղղակի իրա ծննդավայրը։ Այնպէս որ՝ մինչդեռ Սլօի համար Շատախն է վաթան, Ալօի վաթանը Ատանան է կամ Ուրֆան և կամ Կեղին։

Դուք խօսեցէք շատ թէ քիչ հասկացող և մինչև անգամ 1—2 արաբական տառերին ծանօթ քրդուն հետ և կրտես-

նէք, որ Փրանկստան ասելով նա Գաղղիա չի հասկանար, այլ մի երկիր, կամ գուցէ մի դաշտ, մի հովիտ, մի լեռնաշղթայ..., ուր Փրանկներ կըբնակին։ Այդպէս և Արմնիստան կանուանէ քիւրդը, օրինակ, Նոր-Նախիջևանը ոչ թէ նրա համար, որ այդ քաղաքը աշխարհագրական Հայաստանումն է, այլ որովհետև այդ քաղաքում Արմնիներ, Ֆըլլահներ կըբնակին։ Եթէ շատ թէ քիչ զարգացած քիւրդն է այդ հասկացողութեան տէր, ինչ կըլինին միւսները։

Ուրիշ խօսքով կարելի է ասել, որ քըրդու հայեացքով հայրենիքը գոյութիւն ունի լոկ ազգագրականապէս, իսկ աշխարհագրականապէս—ոչ։

Թուրքերէն է փոխանցեալ սիլա (sila-сила) բառը, որ քրդերը կըգործածեն և որը նոյնպէս հայրենիք կընշանակէ, քըրդական բարբառներում այդ բառն էլ կը գործածւի իր պանդխտութենէ վերա-

դառնալու վայր—ծննդավայր, ուր կը-մնան ղարիպի ընտանիքն ու սիրելիները։

Քրդերի բերանում իսկապէս ծննդա-վայր-հայրենիք կընշանակեն հետեւեալ բառերը՝ **մեր լեռները**, **մեր բանակա-տեղը**, **մեր արօտամարգերը** են, որոն-ցով կը յիշեցնեն մեզ այն տեղերը, որոնք այսպէս թէ այնպէս կապուած են քրդա-կան կեանքէն որեւէ պատմական անցքի կամ առտնին անցուդարձի մօտակայ և կամ հեռաւոր անցեալի հետ։

Գաւառացի տաճկահայերը քրդաբնակ վայրերը կըկոչեն **քըրդանոց** կամ **քիւր-դանոց**, ինչպէս և տաճկաբնակները՝ Թուրքանոց կամ տաճկընոց։

Այսօրուայ բազմաթիւ քրդական ցեղե-րէն **Տերսիմցիք** (Dersimtsik) մասամբ և վերջնիս սահմանակից **խըռանցիք** կարող են որոշ չափով պարծենալ իրենց փառա-ւոր **հայրենիք-սարերով**, որոնց ամուր կառչած են դարերէ հետէ և յաճախ ար-ժանաւոր կերպով հրապարակ են եկել

Օսմանցւի դէմ, որի ծայրով պաշտպանելու իրենց հայրենեաց սրբազան ազատութիւնը ընդդէմ արտաքին ոտնձգութիւնների: Սակայն այնուամենայնիւ բացառիկ այդ ցեղը էլի մեր ըմբռնած եղանակով հայրենասիրական որևէ զգացում չէ կրեր իւր ներսի դին:

Քրդերն առհասարակ չեն տածեր դէպի իրենց ծննդավայրը վառ սէր, և այդ ես մասամբ կըբացատրեմ նրանով, որ յաճախ տեղափոխութեան դատապարտուած են նրանք:

Այստեղ կարժէ առաջ բերել և՛ մի քանի քրդական առածներ, որոնք այսպէս թէ այնպէս կը շօշափեն քննելի հարցը: Ահա.

1. Որտեղ երեկոյ—այնտեղ առաւօտ:

2. Որտեղ փորդ կշտացաւ՝ այնտեղէն լաւ տեղ չունիս:

3. Այն առուն, ուրկէ երկար ժամանակ ջուր կըվազէ՝ կըհոտի:

4. Այն դաշտը, ուր երկար կըբնակուիս՝ համն ու լիութիւնը կերթայ:

5. Մուկին վաթանը պատին ճեղքն է:

6. Խլուրդն օրական 100 վաթան կը փոխէ՝ մէկը միւսէն լաւ:

7. Պարկս կընետեմ, ուր ինկաւ՝ այնտեղ է վաթանս: Եւ այլն ևն:

Անցեալ տարիներ մի յայտնի քիւրդ պէկզադէ (իշխանազն) Եգիպտոսում ըսկսեց հրատարակել մի յեղափոխական օրգան «Քիւրդիստան» վերնագրով: Այդ ողորմելի օրգանը, որ Նոր-Քիւրդերի կամ Երիտասարդ Քիւրդիստանի (?) բերանն էր լինելու՝ դեռ մի առանձին նորութիւն չ'ներկայացրած՝ անհետացաւ Եգիպտոսի եթերէն, իրա հետ անհետացնելով և՛ նոր և՛ հին ազատ-քրդութեան գաղափարը: Հայերիս մէջ գտնուեցին տակաւին նոյնպիսի ողորմելի տաք գլուխ պատանիներ, որոնք սկսեցին փառաբանական բացականչութիւններով «մերձեցում» երազել յիշեալ... Քիւրդիստանին

հետ! Արդեօ՞ք համոզուեցան այժմ այդ պարոնները, որ քրդու հայրենիքը եղել է, է և կըլինի կուլտուրական կեանքի երես չտեսած վայրերը... Թղթեղէն «Քիւրդիստանի» սակաւակեացութիւնը մի հսկայ գրաւական է՝ քրդու մէջ հայրենասիրական զգացմունքների կատարեալ բացակայութեան:

Իննսնական թւականներին՝ փառահեղ կոչնակի ձայնէն զարթնած տաճկահայ ժողովուրդը սանձարձակ ազատութիւն էր տուել իւր հայրենասիրական ու ազատասիրական զգացմունքներին, այդ միջոցներին քրդերը փառաւորապէս կըհեգնէին ու կըծաղրէին հայերին: Հետևեալ պաղլաման (baghlama—քրդական լօ-լօ—երգ) կարող է գաղափար տալ ընթերցողին ասածներիս վերաբերմամբ.

Գըրմանճիք. «Այ, լօ̃-լօ̃-լօ̃-լօ̃, լօ̃-լօ̃-լօ̃.
Խօտէ խօտէ, էմ Նըզանըմ,
Ախըրլ Ֆըլլան չի՞ պունէ.—

Կըշտ Թօփ պուլըն նաւ քիլիսան
Տուվէ տըքըն այ խօտէ, խօտէ...
Լօ̃-լօ̃, ֆախիրօ խըրամալօ Էրմէնիստան!

Ջաղաներ. «Այ, լօ̃-լօ̃-լօ̃-լօ̃, լօ̃-լօ̃-լօ̃.
Եէնիան վաննու քի Սուլթան
Խապուլ քէրտա մաղմանըյան,
Վաթ ու, լօլօ, հարէյ շէսթ. խռայլան,—
«Պէկլիկ վէրդիմ Արմէնիան».
Լօ̃լօ̃, ֆախիրօ խըրամալօ Արմընիստան.

Գ. «Այ, լօ̃-լօ̃-լօ̃-լօ̃, լօ̃-լօ̃-լօ̃.
Լօ̃-լօ̃ ֆըլլահ, կուտարի պ՚քըր,
Սուլթան զանը չի՞ չէ տըքըր,
Սուպէ Թէլէ խըրաֆըջ քըշանտ,—
Տիսան շուխուլէ խօ տըքըր ֆէնտ.
Լօ̃ լօ̃, ֆախիրօ խըրամալօ Էրմէնիստան.

Զ. «Այ, լօ̃-լօ̃-լօ̃-լօ̃, լօ̃-լօ̃-լօ̃.
Փանճէս սէռ ու ըննու խառ-
խրռան
Թէփէր արտու փափազ նէ-
նան (?).
Ճի-կիէյրա միեան կավուռան
Ու խալէխօ եօվքէրը փէ ին-
կիլզան.
Լօ̃լօ̃, Ֆախիրօ խրամալօ Ար-
մընիստան!

Գ. «Այ, լօ̃ լօ̃ լօ̃ լօ̃, լօ̃-լօ̃-լօ̃.
Էմ լիրօ հրվան սար ժէ տըքըմ,
Հուն ժէ հէռըն՝ կըլլի պըքըն,
Մէրօֆ էվան քի՞չէ-քի՞չէ մէ-
գէքըմ,—
Էվ լինկլի՞գ քի Թէփմիշ տըքըն.
Լօ̃լօ̃, Ֆախիրօ խրամալօ Էր-
մէնիստան!

Ահա և ազատ թարգմանութիւնը.— Կ'զարմանանք, Տէր Աստուած, Հայերի անխելքութեան վրայ, որ եկեղեցիներում հաւաքուած աղօթելիս կրհուատան այն

առասպելին, որ իբր թէ Սուլթանը (Համիտ II) վերջ մեծ պետութեանց առած լինի, թէ իշխանութիւն տուի հային... Սակայն թող դիտենան հայերը, որ դըրանք խաղեր են (ֆանդ) Սուլթանի կողմէն և վերջնի մի հեռագիրը (ում?) կարող է ամեն ինչ չեղաշրջել... Դրանց (հայերի) սևագլուխը 15 տարի է, ահա, որ անհաւատների մէջ շրջագայելով՝ երկիր կ'երազէ, Անգլիոյ (?) աջակցութեամբ... Այսօր մենք ձեզ (հայերին) կըշորթենք, որպէսզի ձեր խելքի չափն իմանանք և ձեր բարեկամն ով է—ճանչնանք. Են են...»: Կասեն, իբր թէ այդ պաղլամին շարադրել է Բալուի տաճկաց միւֆտի Սայիտ Էֆէնդին—մի ականաւոր հայակեր:

Տարունակութեան մէջ քրդերը «թուքի և մուրի փայ շինելով» հայերի հայրենասիրական զգացմունքը՝ մատնացոյց կըլինին իրենց վրայ, որ այդպիսի «աբեփ երես չ'տեսած խելառութեան» չըհե-

տամտեյուն համար երջանիկ են և ազատ։ Սայիտ էֆէնտի՞ն է, իրօք, դրա հեղինակը, թէ՞ մի ուրիշը, թո՛ւրք թէ քիւրդ, խնդիրը դրանումը չէ, այլ նրանում, որ քրդերը իւրացրել էին, կը սիրէին ու կերգէին։

Գալով Պատմական-աշխարհագրական Քիւրդիստանին, որի մի մասը մեր մատենագիրներէն կոչուած է Կորդէք (gor-tek—Гортекъ), ըստ Kiepert-ի կինեայ՝ հիւսիսէն Կապուտան ու բզնունեաց ծովերի միջև, Արևելեան սահմանն էր այսօրուայ Պարսկաստանը, Արևմտեանը՝ Տիգրիս գետը կամ Պօթան սու։

## 2. ՔՐԴԵՐԻ ԹԻԻՐ.

Քրդական բազմազան ցեղերի ընդհանուր թիւն էլ մինչև այսօր առեղծուած է. եղած տեղեկութիւններն էլ խիստ հակասական ու վայրիվերոյ։ Այսպէս, օրինակ.

մինչդեռ Էլիզէ Ռէկլիւ *) քրդերի ընդհանուր թիւը կըդնէ 1,818,000, անդին ըստ Կինէ'ի և Ռօուլինսօնի' պէտք է հաշուել շուրջ 3 միլիոն. իսկ արտասահմանեան մի քաղաքական օրգան բովանդակ քրդերի թիւը կըհամարէ 2, 250,000։

Այդպիսի հակասական երևոյթը թող չիզարմացնէ ընթերցողին, որովհետև քաղաքական ու կուլտուրական, համեմատաբար, աւելի բարձր աստիճանի վրայ կանգնած տաճկահայերը—ունենալով իրենց կրկին պատրիարքութիւնները, կաթուղիկոսութիւնը, առաջնորդարանները, մամուլը, դպրոցները ևն—մինչև այսօր չունին դեռ մի պաշտօնական, վստահելի վի-

---

*) Միանգամ ընդ միշտ պիտի յայտնեմ այստեղ, որ Ներկայ աշխատութիւնը կազմելիս սեղանիս վրայ ունիմ. ա. Էլիզէ Ռէկլիւի «Լազիստան, Հայաստան և Քիւրդիստան» գիրքը, Թարգմ. Միաբանի. բ. Պօղ. վ. Նաթանեանի «Արտօսր Հայաստանին» և Անդրանիկի «Տերսիմը»։

ճակատագրութիւն հայ ազգաբնակութեան։ Հապա ի՞նչ սպասենք քրդերէն։ Ինչևէ։

Տաճկաց-Հայաստանում գտնուող բոլոր քրդերի թիւը կարելի է հաշուել, մօտաւորապէս, 800,000 հոգի։

### 3. ՔՐԴԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ.

Դեռ Քրիստոսէն առաջ մենք կը հանդիպենք քրդերին՝ մեծ թէ փոքր չափով պատմական տեղերում, սակայն նրանց ծագումը թաղուած է խորին մթութեան մէջ։

Մի կողմ թողած բանասէրների ենթադրութիւնները՝ նոյնիսկ քրդերն իրենք չեն կարող բաւարար յագուրդ տալ մեր հետաքրքրութեանը։

Այսպէս, օրինակ. քրդերի մի մասը իրեն սերած կ՚համարի Պարսիկներէն. երկրորդը՝ Օսմանցուներէն. երրորդը՝ Արաբներէն. չորրորդը՝ Հազրէթի Իբրահիմի—Հայր Աբրահամի—թոռներէն

(Եբրայեցիներէն). Հինգերորդ և բաւական ուշագրաւ մասը համոզւած է, որ «իրենց ու հայերի պապերը միևնոյն մարդիկն են» (Bav évan ou bav éman hévra iéc é—Бавъ эванъ у бавъ эманъ гевра екъ э և կամ hare Armenian ou man ieuv merdoum biyou—Гаре Армніанъ у манъ ёвъ мердумъ бію). Կան դեռ և այնպիսիները, որոնք հայերի հետ խօսելիս կրգործածեն հետևեալ դարձւածքը. «Հայերի և Քրդերի մէջ խորթ մի մազ կայ. կտրեց այդ մազը—կրվերանայ երկու ժողովրդի մէջէն ամեն մի օտարութիւն». պէտք է ասել, սակայն, որ յաճախ այդ ֆրազը կրգործածեն քրդերը որպէս հաճոյացուցիչ միջոց՝ խօսակից հայի աչքը մտնելու համար։

Կան, վերջապէս, քրդեր էլ, որոնք իրենց և եզիդիների մէջ կընկատեն մի այդպիսի բարակ մազ։

Հայ բանասէրներէն մի քանիսը,—Գարեգին սրբազան Սրւանձտեանց, Պօղ. վրդ.

Նաթանեան, Զ. Պոյաճեան և այլք,—լոկ ազգասիրական զգացմունքներէ թելադրուած, քրդերին առհասարակ կամ մեծաւ մասամբ կըհայացնեն. Իբր թէ կեանքի և իրաւանց անապահովութիւնը մղած լինի նրանց նախ դէպի կրօնափոխութիւն — հայադաւանութենէ մահմեդականութիւն — և ապա հեռացրած ազգայնութենէն էլ։

Իջնալ այդպիսի ազգասիրական ենթադրութեան մէջ՝ ես չեմ կարող, որովհետև կըմտածեմ, որ գուցէ քրդերը նոյնքան հին ժողովուրդ են, որքան և մենք Հայկեաններս, և բացի այդ՝ բարեխիղճ բանասէրէն կըպահանջւի քննելի առարկան ներկայացնել ոչ այնպէս, ինչպէս հաճելի է բանասէրին, այլ ինչպէս որ կայ առարկան։ Այդ նախազգուշացմամբ էլ ես պիտի ասեմ հետևեալը. Քրդերի ծագումը եղել է, է և կըմնայ անյայտ մարդկութեան, քանի դեռ գիտական լուրջ

ուսումնասիրութեան ենթարկուած չէ այդ ժողովրդի կեանքը։

## 4. ՔՐԴԵՐԻ ԴՐԱՑԻՆԵՐԸ ԵՒ ՆՐԱՆՑ ՓՈԽԱԴԱՐՁ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

Միակ ժողովուրդը, որին կարելի է հանդիպել բոլոր այն տեղերում, ուր քրդեր կբնակին, դա Հայն է։ Հայոցմէն յետոյ կուգան Օսմանցուները, Պարսիկները, Արաբները, Յոյները, Ասորիք ևն։ Թէև ռուսական հնչսատանումը՝ ըստ պաշտօնական վիճակագրութեան կբնակին 140,000 քրդեր, բայց դրանք յարաբերական որև է գիծ ստեղծած չեն իրենց ու ռուսների մէջ։

Դրանցմէ առաջնի—Հայ ժողովրդի հետ դարերէ հետէ կրպահպանեն քրդերը ամենասերտ փոխադարձ յարաբերութիւններ, որոնց մասին մենք յիշատակեցինք և էլի առիթ կունենանք մանրամասնութեանց մէջ մտնելու։

Տաճիկների կամ Օսմանցուների հետ թէև քրդերն ունեցել են և ունին մօտիկ յարաբերութիւն, բայց վերջինս իր վրայ կրկրէ բացասական հետաքրքիր դրօշմ։ Պարզենք մի քանի կէտեր մի գաղափար տալու համար։

Չ՚նայած տաճիկների ու քրդերի մեծամասնութեան դաւանակցութեան՝ նրանց առանձին կեանքը, նիստ ու կացը, աւանդական սովորութիւնները բոլորովին տարբեր են ու յաճախ այդ. իսկ զանազանութիւնները տեղի կուտան երկսի մէջ սուր, արիւնահեղ ընդհարումների։

Քրդուն անհասկանալի մի առեղծուած կայ, որ շարունակ կրմեծացնէ երկու տարբերի միջի անջրպետը։ Օսմանցւի կառավարութենէն ուղղակի և անուղղակի կերպով շորթուելը, կողոպտուելը, նրա ձեռքին կոյր գործիք դառնալով՝ իրա քրիստոնեայ դրացիների աչքէն իյնալու ուշադրաւ պարագան և նման քաղաքական հանգամանքներն են, որ օրըստօրէ կրխր-

տասնեն սաունութիւնը թուրքի և քըր-
դերի մէջ։

Ըստանց կարծիքով՝ հայերին կողոպտելու
և կոտորելու սուլթանական ամարդի հրա-
հանգը քրդերի սիրտը շահած և նրանց կա-
ռավարեալ բարեկամութիւնը վաստակած կը-
լինի դէպի տաճիկը։ Դա միանգամայն սխալ
ենթադրութիւն է, որովհետև դարեր շա-
րունակ քրդուն կերակրող հայը՝ աշխար-
հաստան դէպքերէն յետոյ, 90-ական դրադի
փայ սև թևականներէն վերջը մանաւանդ,
դադարեց այլևս՝ մէկ կողմէն իրա վաղե-
մի ծրիակերներին կերակրելէ և միւս
կողմէն թրքաց գանձարանը լեցնելէ։ Դա
մի այնպիսի լուրջ հանգամանք է, որ,
ընդհակառակը, փառաւորապէս բացեց
քրդու աչքը և այդպիսով դցեց կարմիր
փաղիշահի և դրա հետ էլ տաճիկ ազգի
վարկը քրդուն մօտ։ Հրապարակում շատ
փաստեր կան այդպէս սաող։

Նոյն իսկ հռչակաւոր «կողոպուտի» ժա-
մանակ 1895—96 թ. թ., շատ բան չի

շահեց խեղճ քիւրդը, որովհետեւ Տաճիկ կառավարութեան անկշտում պաշտօնեաները օրցօրեկով, շնորհիւ վեհափառ սուլթանի, սկսեցին՝ կողոպուտներին վերադարձնելու (sic!) պատրուակով կողոպտել կողոպտողներին... Այդպիսով, ահա, հարամ արին քրդու գլխին իրա խլածը. դեռ դիքթաթէօրի պատասխանատուութենէն խուսափեց պատմական չարութեան հեղինակը՝ վերագրելով ամեն մի եղեռն «քրդերի անզսպելիութեանը», թէև նա դրանով առիթ ունեց քրդերին սնուցանելու իրենց կրծքերին ներքև մի տեսակ էլ ատելութիւն, որը—ով գիտէ—գուցէ մի օր խառնայ և սառնայ ծանր սպառնալիքի բնաւորութիւն...

Այո, շատ չ'անցած, կողոպտուողները էլի դարձան տանելի դրացիներ քրդու համար, մինչդեռ ճիւաղ թելադրողը չարիքի դիմակաւորւած մնաց հրապարակի վրայ՝ ատուած ու զզւելի...

Տաճկի ու քրդու մէջ բարի յարաբե-

րութիւն չ՚պահպանելու. գլխաւոր պատճառներէն մէկն էլ այն է, իմ կարծիքով, որ այդ երկու տարրերն էլ որոշ չափով ուրիշի հաշուով ապրող, անիրաւաբար այլոց իրաւունքին աչք տնկող և հետեւաբար մի տեսակ էլ մրցակիցներ են, որ չեն կարող հաշտ նայել իրար։

Ես երբեք չեմ կարող մոռանալ այն սարսափելի պատերազմները, որոնք մեր երեխայութեան ժամանակ տեղի կունենային և որոնք յաճախ կըվերջանային երկուստեք մի քանիների արնաթաթախ գետին տապալուելով։ Խօսքս կըվերաբերի մանկական պատերազմներին, որոնց մէջ Հայ ու Քիւրդ երեխաները կըկազմէին առանձին՝ միացեալ բանակ ընդդէմ տաճիկներին։ Մեր մեծերը ոչ մի նկատողութիւն չէին աներ մեզ. դա, կարծես, ամենքին հասկանալի ու շատ էլ բնական մի երևոյթ կըհամարուէր։ Այդպէս է և այժմ։ Աւելի հետաքրքրականը ո՞րն է. Հայ և Քիւրդ երեխաները իրար հետ կռո-

ուելիս, միմեանց Թակելիս՝ անմիջապէս համբուրուել են, մոռացել մի րոպէ առաջուան Թշնամութիւնը և միացած՝ յարձակուել տաճիկ երեխաներին վրայ, հէնց որ սրանք կըյայտնուէին կուի վայրը «խնդալու համար բարեկամ համշիրակների ծեծկուքին վրայ»։ Մանկական Թէ խաղերի և Թէ կռիւների ժամանակ Հայ ու Քիւրդ երեխաները կընայէին միմեանց որպէս բարեկամների, իսկ դէպի տաճիկը՝ որպէս անհաշտ Թշնամիի, որի և իրանց մէջ երբեւէ չէ կարող բարի արև ծագել։ Այնպիսի դէպքերում, երբ խաղի այս կամ այն պարագան կ'ստիպէ մի քանի Հայ կամ Քիւրդ երեխաների ընկերակցելու տաճիկներին, խաղն էլ իսկոյն կըկորցնէ իր հմայքը և խաղացողները չեն կարող պահպանել սովորական աշխոյժ տրամադրութիւնը։ Եւ յաճախ կըլսէիք դուք հետևեալ խօսքերը.

— Է՜հ, այդպէս խաղը համ չունի. ախար ի՞նչպէս կարելի է յարձակուել Պէ-

քոյի կամ Արմենակի վրայ, չէ՞ որ դըրանք մերոնցմէ են...

Թէ ինչո՛ւ մահմէտական քրդու լամուքները կըմիանային անհաւատ հայերիս հետ և ոչ տաճկին — դա մի հանելուկ էր, որ շատ էլ չէինք աշխատեր լուծելու! Այսքանը գիտէինք մենք, որ մեր հայրերն էլ իրենց երեխայութեան ժամանակ այդպէս են վարուել, թէև մեծանալէ յետոյ դերերը կըյեղաշրջուին...

Տաճկի դաւանակցութեան մասին խօսելիս քիւրդը կըգործածէ հետևեալ առածը. «Ի՞նչ անեմ ամենապատուական պանիրը, երբ դա շան հոտած տիկին մէջ է»:

Եթէ քաղաքական հողի վրայ բարեկացակամութեան նշաններ կըտեսնէք տաճկի և քրդու մէջ, գիտցէք, որ դա արդիւնք է ուղղակի քիւրդ ժողովրդի քաղաքական անհասկացողութեան: Քիւրդը մի կոյր գործիք է Սամանցուի ձեռքին ընդդէմ քրիստոնեաների և ուրիշ — ոչինչ: Հայէն ոչ-պակաս կըհարստահարուին քըր-

գերը, մանաւանդ հողագործ մասը. այդ կէտը շատ գեղեցիկ, համոզիչ ոճով կը-բացատրէր պ. Մինաս Չերազը՝ 1898 թ., Մանչեսթրում, մի բազմամարդ միթին-կում, որտեղ ներկայ էր և տողերս գրողը։

Հայերը հարստահարուելիս, կողոպտուե-լիս՝ ունին իրենց պաշտպանը, Եւրոպա-կան Դեսպաններն և Հիւպատոսները Կ. Պոլսում, «պաշտպան պետութիւններ» Եւրոպայում ու Ամերիկայում և վերջա-պէս ունին որոշ չափով էլ քաղաքակըր-թութիւն, անուն, որոնց շնորհիւ նրանք (հայերը) կարող են, վաղ թէ ուշ, այս-պէս թէ այնպէս, լսեցնել իրենց հեկե-կանքը, տրտունջները, պահանջների դէմ բաւարարութիւն ստանալ կամ գէթ «խնդիր» շինել հրապարակի վրայ, մա-նաւանդ որ հայ մարդը որքան էլ զոհեր բերէ, գիտէ որ իրեն կ՚սպասէ մի գերեր-ջանիկ արշալոյս...

Ի՞նչ անէ հապա քիւրդը, ում ապա-ւինի, ում դիմէ, որի՞ն իր ցաւը—դա-

բաւոր ցաւը պատմէ և դեղ խնդրէ...

Քիւրդին կըմնայ՝ կամ իրա կրծքով պաշտպանութիւն գանել և կամ, եթէ անհնար է այդ, համակերպիլ ճակատագրի հետ, մինչև որ ժամանակը մի յեղաշրջուած առաջ բերէ։

Թիւրք կառավարութենէն «օգտուողները» եղել են և կըլլինին միայն քիւրդ ցեղապետները, որոնց հպատակները ստիպուած են կերակրելու և՛ Թիւրք պաշտօնեաներին և ցեղապետներին։

Օսմանցուն դարերէ հետէ ձգտել է մահացնել քրդերի մէջ ցեղային նախանձախնդրութեան հոգին և նրանց դարձնել լոկ մահմէդական համայնքներ՝ համախոհ և միատիպ Մարգարէի Խալիֆի ցեղին հետ։ Որոշ չափով յաջողել է նրան այդ բանը. նա կրօնի նշանակութիւնը քանի անգամ աւելի բարձրացրել է ցեղականէն. այնպէս որ յաճախ մահմէդական քիւրդը կ՚անգիտանայ

*իրա ցեղային պարտականութիւնները՝ յօգուտ մահմէդականութեան:*

*Մեր ասածներէն բացառութիւն կըկազմեն «Հասանանցի» կոչուող քրդերը, որոնցմէ կազմակերպուած է «Համիտիյէ» հեծելազունդը և որոնք մի փոքր «կըիւղոտէն» իրենց ցեղակիցների բերանը, թէև շատ թանկ—իրանց կեանքի գնով:*

*Պ. Համբ. Առաքելեանը* „Курды въ персіи“ *գրքոյկում գրել է իմիջի այլոց և հետևեալ ինքնուրոյն տողերը.*—Вообще, курды не имѣютъ идеи національности, національной солидарности и единства... **Всѣ усилія турецкаго правительства основать общую курдскую лигу, объединить курдскія племена въ панкурдскій союзъ** *) Не превели ни къ чему до сихъ поръ, именно потому, что и т. д.»: *Բայց ես չեմ կարող հասկանալ, թէ ինչ զահրումար դաշնակցութիւն է, որ տաճիկ կառավարու-*

---

*) Ընդգծումներն իմս են:

թիւնը կարող էր ցանկալ ստեղծելու համայն քրդերի մէջ, արդեօք հակա-օսմանեա՞ն դաշնակցութիւն, ապագայում օսմանցւի թօղն ու տումանը երկի՞նք հանելու համար... Տէ՜ր Աստուած, քիչ կըմնայ, որ մի Հայ դաշնակցութեան էլ հիմնադիր դարձնեն Սուլթան Համիտին!

Ես վերևում շեշտեցի Օսմանցւի վերաբերմունքի մասին դէպի քրդերը. բայց մի անգամ ևս կրկրկնեմ, որ թիւրք կառավարութեան համար երբէք ձեռնտու չէ իրա հպատակ որևէ ժողովրդի մէջ համազգային որևէ միութիւն առաջ բերելը! Ընդհակառակը քրդերի ցեղային ընդհարումները, որոնց մասին ես դեռ առիթ կ'ունենամ խօսելու, ու րոյն-ուրոյն բնաջնջող քրոնիքական վրէժխնդրութիւնը են Սուլթանի սրտին այնքա՜ն մօտիկ պարագաներ են, որ ամէն կերպ կըքաջալերէ ձեռքի տակէ...

Բայց բաւական է այդ առթիւ։

Տնտեսական յարաբերութիւնը նոյն-

պէս շատ թոյլ է այդ երկու տարրերի մէջ։ Այս ասպարիզում դարձեալ հայն է ամենամեծ դեր խաղացողը։ Տաճկա-Հայաստանի քրդերն իրենց թէ՛ գործուածքները, թէ՛ կաթնատնտեսութեան, թէ՛ երկրագործութեան և թէ անասնաբուծութեան արդիւնքները կըվաճառեն իրենց հայրենակից հայերին, որոնցմէ և կ՚ստանան իրենց կենսական պիտոյքները։

Թէ ինչպիսի յարաբերութիւն ունին քրդերը դէպի Պարսիկները — չ՚գիտեմ, որովհետև Պարսկաստանում եղած և անձամբ ծանօթացած չեմ այդ երկրի քրրդերի կեանքին. բայց, երևի, այնտեղ էլ քրդերն աւելի հայերի հետ կըլինին սերտ, քան շիաների հետ։

Կարդացի «Մուրճ» ամսագրում (1904 թ. №№, 5, 6 և 10) պ. Ե. Ֆրանգեանի յօդուածները «Պարսկաստանի Քիւրդերը» վերնագրով. ափսոս սակայն, որ քիւրդ ու պարսիկ ժողովրդի յարաբերութեան

մասին այդ յօղուածներէն որոշ գաղափար կազմել կարելի չեղաւ։

Չնայած որ քրդերի մի մասը իրեն կըհամարի Արաբներէն սերած, բայց քըրդերն առհասարակ որև է սէր չեն տածեր դէպի այդ «տէվռէշները» (սևաբերան-սևերես). չկայ մի հանգամանք, որը գրաւական լինէր քիւրդ-արաբական բարի յարաբերութեան գոյութեան։ Քիւրդը քեզ նախատելու կամ «սատանայ!» ասելու տեղ արաբի ձաղ կանուանէ։ Ցեղային ատելութիւնը, փոխադարձաբար, աչքի կիյնայ թէ՛ Արաբների և թէ Քրդերի մէջ։

Յոյնը, քրդու ասելով, ոչ էշիր է, ոչ էլ Հայ. հոռոմի մէջ աշիրութեան նշան չ՚կայ... Հոռոմն ստեղծուած է միայն սատանային առաջնորդելու դէպի չարագործութիւն, դէպի մեղքերի հովիտը... Հոռոմները անիծուած էլ (ազգ) են թէ՛ Ալահէն և թէ մարդիկներէն... «Հոռոմին

բարեն տանողի գործը 7 օր անյաջող կերթայ»։ Եւ այլն եւն։

Ասորիները քրդերի համար, որպէս դրացի, բաւական նման են հայերին. Թէեւ ասորիք կամ խաղուպիները այնպէս «կերակրողներ» չեն, ինչպէս հայերը, մանաւանդ ազատ ճուլամերկցիք, որ գիտեն սրի ծայրով բանակցիլ դրացիների հետ. սէֆիլ ասորիները, խօսք չկայ որ, քրդու համար նոյն «բրդուտ ոչխարն ու կաթնուտ կովն են» ինչ որ հայերը։

Ճակատագիրը քրդերի մի մասին էլ ձգել է Ռուսաց հողին վրայ։ Այս նոր դրացիները—ռուսները — որպէս սառը մոսկոֆի էլը իսկզբանէ անտի չեն կարողացած ներշնչել քրդերի մէջ որեւէ համակրանք։ Եւ շատ հասկանալի է այդ, որովհետեւ Ռուսաստանը իրա զաքոններով քրդուն չի տար կողոպտելու, սպանելու, գողանալու արտօնութիւն ու պատրաստ է ամենախիստ պատիժներով դադացնելու քրդական սրբագործուած սովո-

րութեանց հետևողներին։ Պատմական իրողութիւն է, որ Թիւրքէն կամ Պարսկէն ռուսաց ձեռքն անցած երկրներէն քրդերը կըգաղթէին հարևան երկիրները։ Ռուսաստանի մթնոլորտը ճնշիչ կերևնայ քրդուն. վերջինս աւելի նախամեծար կըհամարէ ապրել Տաճկաստանում կամ Պարսկաստանում թէկուզ մուրացկանութեամբ, քան Ռուսաստանում—ամենալաւ կեանքով։

Ռուս-Պարսկական պատերազմների ժամանակ քրդերը մեծամեծ ծառայութիւններ կըմատուցանէին պարսից խաներին ու սարդարներին ռուսաց դէմ։

Առանձին քրդական աշիրներ՝ իրենց սեպհական միջոցներով զինուած՝ դէպի Երևան կըվազէին, ճակատելու կեաւուր Մոսքոֆին դէմ։ Քաղաքակրթութիւնը ռուսաց ձեռքով պիտի տարածուէր, մինչդեռ այդ բանը քրդու տամարին կըդըպչէր...

———

Երբ կը խօսինք քրդերի դրացիների և փոխադարձ յարաբերութեանց մասին՝ անհրաժեշտ է երկու խօսքով կանգ առնել բուն քրդական ներքին յարաբերութեանց վրայ։

Ինչպէս յետոյ պիտի տեսնենք՝ քրդերը բաժանուած են 100-աւոր ցեղերի և իւրաքանչիւր քիւրդ ցեղ կ՚բնակի որոշ սահմաններում և ինքնուրոյն, առանձնայատուկ կեանքով։

Ամենայն վստահութեամբ կարելի է ասել, որ չ՚կան քրդական 2 ցեղեր, որոնք հաշտ ապրելիս լինէին, հաշտ բառի լայն իմաստով։ Բոլոր ցեղերը լարուած յարաբերութեան մէջ են իրար հետ, միայն այդ լարումը ոմանց մօտ ստացած է լուրջ քրոնիքական կերպարանք և ոմանց մօտ՝ թոյլ, անվտանգ։ Ամենափոքրիկ անախորժութիւնը կամ թիւրիմացութիւնը բաւական է՝ 2 և աւելի ցեղերի, այսպէս ասած, քաղաքական յարաբերութիւնները խզելու համար։ Մի քանի ոչխար,

մի բուռն հող, մի հրացան ևն, գողա-
ցուած այս կամ այն ցեղի մի անհատէն
և տեղի տուած մի փոքր ընդհարման ապ-
րանքի տիրոջ ու գողացողի մէջ,—կարող
է բռնկցնել ցեղային հրդէհ, դուռ բանալ
ցեղային պատերազմների առաջ։

Քրդական կեանքի այդ ամենախախուտ
կողմը, որ պատճառ է դառել քրդու դա-
րաւոր քամբաղդ կացութեան և որը բո-
լորովին անհնար է դարձրել համաքրդա-
կան որևէ ossimilation,—այդ կէտի մա-
սին ամենահետաքրքրական պատմական
փաստեր, իրողութիւններ, իրական դէպ-
քեր, հարազատութեամբ նկարագրած՝
պիտի գտնէ ընթերցողը իմ «Քիւրտ-Պէկ»
վերնագրով աշխատութեանս մէջ, մանա-
ւանդ Է. Ը. Թ. և Ժ. հատորներում։ Դեռ մի
փոքր էլ կը խօսենք մենք ներքևում։ Այս-
տեղ պէտք է եզրակացնել միանգամ ընդ-
միշտ, որ քրդերի ներքին յարաբերու-
թիւնները մազէ կախուած բաներ են ու
միշտ թշնամական։ Մշտական սպառա-

զինուած կացութիւնը հսկայ դրաւականէ քիւրդ ցեղերի դէպի իրար ունեցած արիւնածարաւ ատելութեան։ Երեւակայեցէք նախարարների ցանցով ողողուած ապակենդրոն Հին Հայաստանը և դուք մի փոքր ծանօթացած կըլինիք ժամանակակից քիւրդ ցեղերի յարաբերութեանը, այն զանազանութեամբ որ Հայ նախարարների մէջ ազգային կապը և ազգայնութեան գաղափարը խորունկէկ արմատներ գցած լինելով՝ թոյլ չէին տար նրանց շարունակ բզքտել իրար....

## 5. ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ

Բոլոր քրդերը կըբաժանուին երկու մասերի—նստակեացներ և կէս-թափառաշրջիկներ։ Միանգամայն սխալ է շատերի այն կարծիքը, թէ քրդերն հաստատ բընակութիւն չունին։ Ես կասեմ ընդհակառակը, որ քրդերը իսկական թափառաշրջիկներ չունին, ինչպէս բոշաներն են, գնչուները։

Նստակեաց քրդերը կըպարապին գըլխաւորապէս հողագործութեամբ, անասնաբուծութեամբ և կաթնատնտեսութեամբ։

Երկրորդ ճիւղին կըպատկանին խաշնարածները, որոնք իրենց զբաղմունքի պահանջների համաձայն ստիպուած են տարուան եղանակներին հետ փոխել և իրենց բնակավայրերը, ու այդ իսկ պատճառով կոչեցի, նրանց կէս-թափառաշրջիկներ։

Ներքին բաժանումները նոյնպէս բարդ չէ, թէ՝ առաջին և թէ երկրորդ քաթեգորիայի քրդերը գլխաւորապէս կըբաժանւին 2-ական մասերի։

Նստակեաց քրդերի բարձր դասակարգը կըկոչւի Աղալար, միջին և ստորին դասակարգերը՝ Մարապալար (marabalar—Марабаларъ)։

Աղալարը հողատէր դասն է, որ միաժամանակ էլ կընէրկայանայ կատարեալ տէրը մարապալար (աշխատաւոր—երկ-

րագործ) դասին բոլոր էութեանը, մինչև անգամ կեանքին էր։ Մարտայս քիւրդը գիշեր-ցորեկ, ամառ-ձմեռ, իր ընտանիքի բոլոր անդամներով կըտանջուի՝ լոկ աղալարին կշտացնելու համար. իսկ իւր դառնագին աշխատութեան փոխարէն նա կըստանայ աղալարէն հազիւ իրեն ապրեցնելու չափ կենսական պաշար. շատ անգամ էլ չ'կարողանալով կերակրել իրա գերդաստանը՝ կստիպուի դիմել գողութեան և այլ չարագործութեանց։

Աղալարները կատարեալ ծրիակերներ են, առանց մի ժամ աշխատելու՝ նոքա խղճի ամենայն հանգստութեամբ կըվայելեն հազարաւոր մարապաների ճակատի դառն քրտնքի արդասիքը։

Աղալարի զբաղմունքն է՝ որսորդութիւն, աւազակութիւն և ցեղին կառավարելու հոգսը։

Աղալարը որպէս դատաւոր՝ պիտի վճռէ իր ցեղի բոլոր դատերն ու վէճերը

և նրա վճիռն անյեղաշրջելի է. կ'արձակէ նա և՛ մահուան վճիռներ։

Որպէս իշխան՝ աղալարը պիտի պահպանէ իր ցեղը արտաքին թշնամիների դէմ։

Որպէս իրաւատէր՝ պիտի վճարէ իր ցեղի բոլոր պետական հարկերը (կամ այդ պէտք է բաժանէ իրա և թիւրք պաշտօնեաների միջև)։

Որպէս լիազօր—սպարապետ՝ պիտի խնամք տանէ իրա մարդիկների կատարեալ զինավարժութեանը և ի պահանջել հարկին պիտի զինէ անզէններին։

Աղալարը իրենով կրներկայացնէ ամբողջ ցեղը՝ կրելով վերջնի բոլոր առանձնայատկութիւնները և, հաւատարիմ թարգման հանդիսանալով նրա բոլոր պահանջներին ու կարիքներին։ Աղալարի հայեցողութեամբ կ'արտայայտւի ամբողջ ցեղի կամքը, որի շնորհիւ էլ աղալարը կրհանդիսանայ որպէս ամենագլխաւոր դերակատարը քրդական կեանքում։ Ա-

ղալարէն զատ մնացեալ բոլոր քրդերի մէջ կըտիրէ «կրաւորական համաձայնութիւն և սպասողականութեան դլութիւն»։

Խաշնարած ցեղերի բարձր դասակարգը կըկոչուի Սուրու ճիլար (souroudjilar—Суруджиларъ), մնացեալք դրանց ծորտերն են, հովիւները և կոյր կամակատարները։

Այս ցեղերէն են աւելի աւազակաբարոյ քրդերը։

Հողևորականութիւնը, կարելի է ասել, առանձին դաս չի կազմեր. ինչպէս հայերը, նոյնպէս և քրդերը կղերական դասակարգ չունին. քրդերը բաւական անտարբեր են դէպի դաւանանքները և այդ պատճառով էլ մեծ նշանակութիւն չեն տար իրենց մոլլաներին, շէյխերին, սէիդներին և տէրվիշներին։ Սակայն ազնուական շէյխերը և ժառանգական սէիդները կըվայելեն քրդերի մէջ մեծ յարգանք, չէ՞ որ դրանք «բարձր» գերդաստանի զաւակ են։

Երբեմն շէյխերը կրխաղրան համայնքի լիազօր պետի դեր, որով միաժամանակ թէ՛ մարմնաւոր և թէ հոգևոր իշխանութիւններն իրենց հօտի միացրած կը լինին իրենց ձեռքում։

XIX դարի պատմութիւնը արձանագրել է իր էջերում մի քանի շէյխերի ոխրագործութիւնները, որոնք, որպէս խտացած մի սև գիծ՝ կանցնին քամբաղդ փոքր Ասիայի Նորագոյն պատմութեան մէջէն։ Բաւական է յիշել Շէյխ Սադատուլլան, Նրա որդին Շէյխ Ջալալէդդին, Շէյխ Իպատուլլահ, Շէյխ Հասան... անունները բաւական են՝ ցոյց տալու այն դժոխային դերը, որ խաղացել են դրանք փոքր Ասիայում։

Հարցրէք Կարմիր Հայաստանի ժեռ քարերին և նոքա պիտի պատմեն ձեզ այնպիսի անցքեր, որոնք ձեր մազերը պիգ-պիգ պիտի կանգնեցնեն!...

Սէյիտներէն նրանք, որոնք որդոց որդի հնձւելու իրաւունքն են ստացած

դարերէ հետէ, նոյն հեղինակութիւնը կըվայելէին, ինչ որ ազնուական շէյխերը։

Քրդերի բոլոր ցեղերը, նայած իրենց գործածած բարբառներին, կըբաժանուին երկուսի։ Թէև, կարելի է ասել, որքան ցեղեր, այնքան և քրդական բարբառներ կան, բայց դրանք ամէնը ճիւղերն են այն երկու մայր-բարբառների, որոնք կըկոչւին Գուրմանջերէն կամ Կրմանջերէն և Զազայերէն կամ Տըմըլերէն։

Ներկայ աշխատութեան Բ. հատորում երկարօրէն պիտի խօսեմ այդ բարբառների ծագման և կազմութեան մասին. այնպէս որ չարժէ այստեղ դրանով զբաղուել։

Նկատենք միայն, որ ամենուրեք աչքի կիյնայ Տըմըլիների ու Գուրմանջների մէջ թշնամութիւն։

---

Ցեղային բաժանումների մասին կարժէ ասել երկու խօսք, որովհետև մեղա-

նում «ցեղ» բառը խիստ առաձգական նշանակութիւն է ստացել։

Քրդական հարիւրաւոր ցեղերը, որոնք այսօր կըկրեն առանձին անուններ, իրենց գոյութիւնը՝ որպէս ինքնուրոյն համախմբումն՝ կըպարտին իրենց բնակավայրերի աշխարհագրական դիրքին, որը կըներշնչէ իրա բնակիչների մէջ սանձարձակութիւն, կենտրոնախոյս հոգի կամ, ինչպէս իրանք քրդերը կասեն՝ «Պէկէմ պէյկիյէ» կամ «Պէյուլար հըյվէնա»։

Տարակոյս չ'կայ, որ այսօրուայ բազմաթիւ ու անկապակից ցեղեր մի ժամանակ կըկազմէին մի մեծ ու փառաւոր ընտանիք և միայն ներքին կազմակերպութեան ապակենտրոնացման սիստէմի շնորհիւ տրուցան այսօրուայ տնաքանդ վիճակին։ Անհերքելի ճշմարտութիւն է այն, որ անքաղաքակիրթ, չ'լուսաւորուած ժողովուրդներ իրենց հաւաքական ույժն ու նշանակութիւնը կըպահպանեն միմիայն կենտրոնացումով։ Ապակենտրոն կազմա-

կերպութիւնը կըդարձնէ այդպիսիներին մի-մի չարագործ, ենիչէրի, պաշիպօզուք և վերջապէս ենթակայ հանապազօրեայ քայքայման...

Այդպէս պատահեց մեր հայրենակից քրդերի հետ. ապակենդրոնացումը քանդեց քրդերի տունը. ապակենդրոնացումը կըքանդէ դեռ շատերի՜ էլ տունը։ Խե՜ղճ քրդեր... Նրանք կազմալուծւեցան հետզհետէ, գոյութիւն ունին ազգակործան պառակտման, ատելութեան և յիմար ոխի հողին դարձրեց երեկւան եղբայրներին մէկ-մէկ անհաշտ թշնամիներ։ Չ՚կար նրանց մէջ մի զօրեղ կենդրոնացում, որ համախմբէր բոլոր եղբայրների ուժերը և այդպիսով չէն ու պայծառ պահէր օճաղը քրդութեան։ Այսօրւայ հուժկու պետութիւննե՞րը դեռ անկարող են ապակենդրոն դրութեամբ երկիր կառավարել, ո՞ւր մնաց հայը կամ Քիւրդը, որ այդ սիստէմով միայն անբարոյականանալ ու կայը կորած հորթուկի նման իրա դար-

տակ գլխի փչած կողմը թեքուել կա-
րող է...

Այդպիսով, ահա, բրդերը առանձին-առանձին խմբակներ կազմելով՝ ձևացուցին զատ-զատ «ցեղեր»։ Եւ ի՞նչ, յաճախ «ցեղ» ասելով կը բնորոշեն մարդիկ այս կամ այն գիւղի (մի՜ գիւղի) բնակիչներին, որոնք չ'կամենալով և սակայ չ'կարենալով եօլա դնալ իրենց գիւղից- ցեղակիցների հետ՝ թխեցին «Նոր-ցեղ», տալով նրան և Նոր—իրանց գիւղի—անունը։ Այդպէս են կազմուել՝ Օշինցիք, Ալխատեանք, Քըրմըցիք, Օխչիանցիք, Պաղի-Աղատցիք, Հաւկըցիք և այլ և այլ ցեղեր։ Բանն այնտեղ հասաւ, որ ցեղ բառը կորցրեց իւր իսկական նշանակութիւնը։

## «ՄԻ ԺԱՄԻԱՆ ՄԷՋ ՄԷՐՋԻԿ ՑԵՂԸ ՋՆՋԻԵՑԱԻ»...

Այդպէս կ'երգէին մի ժամանակ երեխաներն ու պառաւները... Թէև սուտ է,

«Մերգեկ ցեղը ջնջուած» չէ, Մերգեկ ցեղի հորթուկներն էլ այսօր կրվազվռտեն անպարտ նահատակների անյիշատակ շիրիմներին վրայ, իսկ Մերգեկցոց, իբր թէ սպանուած, ցեղապետ Շարաֆ աղան այսօր էլ տաքաւին անյագօրէն կըծծէ անպարտ Վասպուրականցի Հայի արիւնը,— բայց խնդիրը նրանումն է, որ «մի ժամում մի ցեղ ջնջելու» թէկուզ խօսքն էլ դուրս կ'ուգայ կոյր աշուղի բերանէն։ Ահա թէ, սիրելի ընթերցող, որտե՞ղ հասաւ «ցեղի» նշանակութիւնը։

Ուղիղն ասելով՝ քրդական քիչ համախմբումներ կան, որոնց կարելի է իսկական ցեղեր կոչել, մնացեալները, ինչպէս Բալուցիք կ'ասեն, «ընկուզի գողեր» են։ Տաճկա-Հայաստանում տարեկան քանի՞ ցեղ կըջնջւի իրար ձեռքով և քանիսն էլ սունկի նման կըբուսնին այս կամ այն պատի տակին!

## 6. ՔՐԴԵՐԻ ԱԶԳԱՆՈՒՆՆԸՐԸ ԵՒ ՆԸՐԱՆՑ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԸ.

Ազգանուան օրինաւոր գործածութիւնը մտած չէ քրդերի մէջ։ Առ հասարակ տղամարդ և կին՝ քրդերը՝ կըկոչուին իրենց հօր կամ տան նահապետի անունով, որը մեռնելով՝ այդ շնորհը կըփոխանցէ իւր որդուն կամ տան մի այլ ազդեցիկ տղամարդուն։

Եղել են պարագաներ, երբ մէկ կամ մի քանի արիւնակից ընտանիքներ կրել են այս կամ այն կնոջ անունը որպէս մականուն, շնորհիւ նրա ազդեցութեանը։

Յաճախ պատերազմների մէջ ընկնող հերոսը կըբանայ նոր ազգանուան դուռ իրա մերձաւորների համար։

Քիչ չեն և այնպիսի դէպքեր, երբ մի գիւղի ժողովուրդ իրա գիւղապետի անունը գործածէ որպէս ընդհանուր, հաւաքական (collectif) մականուն։

Շատ անգամ էլ քրդերը կիլ (guil)

մասնիկը կցելով այս կամ այն գերդաստանի նահապետի անուան՝ կըձևացնեն նրա տոհմանունը։ Եթէ, օրինակ, Խլօ է նահապետի անունը (այդպէս և սան մի այլ ազդեցիկ անդամի), քիւրդը «Խլօ-Կիլ» ասելով կըհասկանայ՝ ինչպէս հայերէն՝ Խլօյեան կամ Խլօյեանց կամ Խլօյենց. տաճկերէն՝ Խլօ-օղլի, Խլօ-զադէ, ռուսերէն՝ Хло-евъ են են։

Եղել են դէպքեր, երբ քիւրդն ամուսնանալով՝ իրմէն բարձր հասարակական դիրքի տէր որևէ «մեծաւորի» աղջկան հետ՝ այնուհետև կրել է իրա աներոջ տոհմանունը. յաճախ զաթ ֆիլանու (zat filanou—այսինչի փեսան) կամ զիա ֆէշմէքէն (zia fechmequèn—նոյնը) ասելով կըբնորոշեն այդ կարգի ազգանունները։

Ծննդավայրի անունով կոչւող շատ գերդաստանների կարելի է հանդիպել՝ Նոր գաղթավայրում կամ պանդխտավայրում։ Ժը Վանէ (je Vane—Վանեցի, Վանէն) կամ

Վանրա (Vanra—Նոյնը) կըկոչուին Վանեցի գաղթական ընտանիքները։

Այս կամ այն ուշագրաւ դէպքը, արկածը, հետաքրքիր եղելութիւնը կամ անցքը սաէպ առիթ կուտայ հեղինակի գերդաստանը և նոյն իսկ յաջորդ սերունդը նրա կոչելու այդ անցքի և այլնի անունով։ Օրինակ. ենթադրենք մի րոպէ որ մեր խմբով կ'երթանք ասպատակելու. ով մեզանէ վախկոտաբար խոյս կուտայ հերոսական ասպարէզէն՝ նրա ազգանունը կըմնայ՝ «փախչողենք», «երկչոտենք», «դաւաճանենք» ևայլն։

— Քրդերն իրենց ցեղերը կըկոչեն էլ, իսկ ցեղապետներին՝ Էլ աղասի, պէկ, պէկլարպէկ, աղա, միր, միրիմիրան, մէզըն աղա, սուրուճի, աղէ, պաշխուլի, հարէյ.

## Բ.

## ՄԱՐԴԱԲԱՆԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒ-ԹԻՒՆՆԵՐ

### 1. Մարմնի կազմւածքը.

Մենք վերևում տեսանք, որ քրդերը փռւած են մի ահագին տարածութեան վրայ և որ, ըստ քրդաց բանաւոր աւանդութեան, նրանք սերած են զանազան ազգութիւններէ։ Այդ հանգամանքն ինքն ըստ ինքեան կ'ապացուցանէ որ ընդհանուր մարմնակազմութիւն չէ կարելի մատնանիշ լինել բոլոր քրդերի վրայ։ Այո, դուք քրդերի մօտ կը հանդիպիք և' պար-

սկական, և՛ յունական, և՛ տաճկական ու-այլ տիպերի։

Չորրորդ Հայքում, եթէ քրդական տարազը չըլինի, նրանց բոլորին հայ պիտի կարծէք։

Բայց և այնպէս, կարելի է Տաճկա-Հայաստանի քրդերի ստուար մեծամասնութեան մարմնակազմութեան մասին ասել հետևեալը։

Հասակը բարձր և առողջակազմ. լայն և դուրս ինկած կուրծք, ծածկուած քաքուլներով—խիտ ու երկար մազերով. հաստատակազմ ու մսուտ թևեր և սրունք-քներ. լայնադիր ու երկար՝ բայց տափակ ոտներ. կլորակ գանգով մեծ գլուխ. գլխի թուխ մազերի և աչքի գոյնի հազւագիւտ նմանութիւն. լայն՝ մեծ՝ բայց և յաճախ տափակ ճակատ. խիտ ու երկար յօնքեր և արտևանունքներ, որոնք կըհսկեն արնակալած անհարկու աչքերին վրայ՝ յայտնի իրենց խոշորութեամբ և սրատեսութեամբ. քրդու դէմքին վրայ

վեհութեամբ բազմած է հայկական կամ արծուի քիթը՝ քրդու լիաթոք շնչառութենէն շարունակ սուլող լայն պնչածակերով. հարուստ պեխերով բեռնաւորուած վերին հաստ շրթունքը շատերի մօտ վեր է սոթտած ու հազիւ կրկայի ներքնին, որոնց արանքէն կարելի է տեսնել երկշար սպիտակ ատամները. լայնանիստ՝ դէպի ծոծրակը թեքած ականջները, որոնք յաճախ զարդարուած են մետաղեայ օղերով. մեզ համար անախորժ և մինչև իսկ անտանելի յախուռն ձայներին մեծ ախորժակով կ'ունկնդրեն քրդու ականջները. սակայն նոյն այդ ականջները, զարմանալի հակասութեամբ, բոլորովին անձնատուր կլինին զուռնայի մելամաղձոտ եղանակներին, երբ քիւրդն այդ՝ թէև պարզ բայց իսկապէս հրաշալի գործիով կըգլգլացնէ՜ հերոսի կրծքէն բղխող վերջին հեկեկանքները կամ ուռիներով շըրջապատուած առուակի եզրին, լուսնկայ գիշերը, աշուղ (սիրահար) զոյգի մաքրանը-

ւեր ու ծողկեշունչ մրմունչները․ քրդու-
աչքերը խիստ կըծոլրեն խանյառանձամուկ
փայլուն գոյներ, որոնք կըզգերեն քրդու-
սիրտն ու հոգին միամիտ երեխի նման․
քրդու բերանք լայն է, մեծ և ընդունակ
տեղաւորելու իրա մէջ քրդական թա-
թում պատրաստուած ահագին պատառը։

## 2. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ.

Սովորականէն կարճահասակ կամ թզուկ մարդկանց դուք չէք հանդիպիր քրդերի մէջ․ ծարապալիր դասի մէջ միայն կան միջահասակներ։

Երկու սեռերի մարմնակազմութեան մէջ կարելի է նկատել այն զանազանութիւնը միայն, որ քրդուհու դիմագծերը համեմատաբար ազատ են այն անճոռնիութիւններէն, որ կըներկայացնէ քիւրդ տղամարդու դէմքը։

Բարակ և երկար պարանոցի կըհանդիպիք դուք ազնուական դասերի մէջ։

Մարմնի (իրանի) հաստութեան կող-
մէն վայելչակազմ են։ Քրդու քայլուածքը
հաստատ է, անյողդողդ և խոշոր (ատը-
մով)․ քայլելիս քրդու իրանը ուղղաձիգ
է կամ մի փոքր դէպ առաջ թեքուած․
ուսների հետ անպայման կըշարժին նրա
թևերը։

Քրդու ձայնը կըհնչէ խիստ և առող-
ջագին։

Խօսակցութեամբ քիւրդն ընդմիշտ
ցասկոտ, բարկացած մարդու տպաւորու-
թիւն կըթողնէ իւր ոչ-քիւրդ խօսակցին
վրայ․ Նա կըխօսի մէկին շեշտերով, ա-
ռանց որևէ սղումի և որոշ չափով էլ
երգելով։ Ախորժալուր է մանաւանդ քըր-
դու պատմուածքի ձևը․ քիւրդը կըդիւ-
թէ ունկնդրին իրա՝ խօսակցութեան ար-
ւեստականութենէ ազատ և բնականէն
գեղեցիկ պարձուածքներով, համեմուած ա-
ռասպելախառն, հրաշազարդ և անհեթեթ
կտորներով, որոնցով նա իր հերոսներին
կըբարձրացնէ մինչև եօթներորդ երկինք

և, եթէ՛ հակակրելի՝ բացասական տիպ է պատմուածքի հերոսը,—մինչև «դժոխքի անտակ անդունդը»։ Ծերունի կամ պառաւ քիւրդը ոչ կըսիրէ և ոչ էլ կըպատմէ այնպիսի հէքիաթներ, որոնց հերոսները սովորական մարդիկ են։

Հետաքրքիր է, որ քիւրդ տղամարդկանց խօսակցութեան ձևն աւելի գրաւիչ է, քան կանանցը. այդ բանը կարելի է նկատել նոյն իսկ երեխայական հասակներէն։

Զ'նայած իրենց վայելած հռչակին՝ քըրդերն այնքան էլ ֆիզիքական ոյժ չունին։ Ճարպիկութեան կամ արագաշարժութեան մէջ էլ մեծ շնորհք ցոյց չեն տար։ Սակայն լաւ վարպետ են ձի նըստելում և զէնք գործածելում։

## Գ.

## ՔՐԴՈՒ ԲՆԱԿԱՐԱՆԸ ԵՒ ՆՐԱ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ.

### 1. Մարապալարի բնակարանը.

Անհրաժեշտ է նկատել այնտեղ ամենէն առաջ, որ Նստակեաց քրդերի գիւղերը դասաւորուած են երկու կերպ—կամ բոլոր տները իրար կից՝ խառնուած և կամ ջոկ-ջոկ, իրարմէ բաւական տարածութեամբ հեռու։ Թէ՛ առաջին և թէ վերջին դէպքում քրդու տունը կամ կիսով չափ ստորերկրեայ է և հազիւ գետնի մակերևոյթէն կէս մարդահասակ բարձրութեամբ, կամ թէ չէ՝ էլի ցածլիկ (հազիւ

3—5 արշին բարձր) ու ողորմելի տներ
են այս կամ այն ժայռի տակին կուչ ե-
կած։ Երկյարկանի տների չէք հանդիպիր
մարապալայի մօտ։

Մարապալայի տունը (mal—малъ կամ
khana—хана) մեծաւ մասամբ ունի հե-
տևեալ կազմութիւնը։

Ամբողջ տունը բաղկացած է մի մեծ
քառակուսի օթևանէ (покой), որի մի
կողմը անջատուած է ճաղերով կամ միջ-
նորմով (baghdadi—багдади) և այդ կը-
տորւածքը կը ծառայէ ախոռի տեղ. մի
երկրորդ մասումը զետեղուած են քրդու
պաշարեղէնները և աման-չամանները. եր-
րորդ մասը կը ծառայէ ննջարանի տեղ,
ուր միաժամանակ կը մխայ քրդու նուի-
րական օճաղը։ Տան II և III մասերն յա-
ճախ զատուած կըլլինին ամպարներով ո-
րոնք կը շինուին հողէ, փայտէ, մացառէ
ու ցեխով պատած. այդ ամպարներում
կըլեցնէ քիւրդը իւր ունեցած-չունեցած
ցորին, կորեկը, կըլկըլը։

Տան պատերը բարձրացած են քարով կամ հողաշէն աղիւսներով, որ քրդերն իրենք կըպատրաստեն (հասարակ հողէ, ջրէ և յարդէ կըպատրաստէ ցեխը, որին կըլեցնէ փայտեայ կաղապարների մէջ և կըշինէ քառակուսի ու խորանարդ քեարպիճը (kiarpidj-кярпиджъ-աղիւս) 1/4 արշինի չափ թանձր ու կըչորացնէ արևի առջև)։

Տներն իրենց լոյսը կ'ստանան հողածածկ ու տափարակ առաստաղէն (կըրտուր) բացուած մի փոքրիկ քառակուսի լուսամուտէ, որն ամառ-ձմեռ զուրկ է որևէ շրջանակէ ու ապակիէ։

Օդը ներս կըթափանցէ միայն ցածլիկ դռներէն իր հետ ներս բերելով և՛ դըսի փոշին ու աղտեղութիւնները և թէ, ձըմեռ ժամանակ, ձիւնն ու բուքը։ Շատ տներ զուրկ են նոյնիսկ վերոյիշեալ փոքրիկ լուսամուտէն. այդպիսի զուտ քըրդական տները իրենց լոյսը կ'ստանան ծխնելոյզի միջոցաւ, որը միշտ լիքն է

ծխով ու հազիւ երբեմն կըկարողանայ աղօտ լոյսի մի շերտ ներս գցել իր բարձունքներէն։ Կան և այնպիսի տներ, որոնք ունին միքանի բաժանմունքներ, առանձին-առանձին շինած և յատկացրած բնակարանի, մառանի, ամպարի, ախոռի ևն։

Բոլոր տեսակի տների յատակը լոկ հողէ է, որի վրայ շատ քիչ անգամներ քըրդուհին մի բուռը ջուր սրսկելու շնորհ կանէ։

Պատերը քրդուհին երբեմն սուվա (souva—շաղախ) կանէ՝ կըծեփէ աղբախառն ցեխով։

Թավանը (tavan - таванъ=առաստաղ) իւր բոլոր ծանրութեամբ կըհանգչի մի շարք գերանների վրայ, որոնց վրայէն էլ մարդակներն են (mèrtèc) շարուած, ապա մացառ, ցեխ և ի վերջոյ ծեփը, որ արեւէն չըճաթռտելու համար քիւրդը տարէնը մի քանի անգամ կըլողէ (լող քարով) անձրևային եղանակներին, կամ եթէ

լողքար չունի մեծ տափիկով (թակ) «կը-ժեծէ» ծեծքուածքները։ Կտուրների վրայ տափանիով է։

Մի թաղի կամ յաճախ ամբողջ գիւղի տների կտուրները միևնոյն բարձրութեամբ, իրար անմիջապէս կից, կըներկայացնեն մի հսկայական հրապարակ, ուր տեղի կունենան համայնական աղօթքները, սպայքամների (տօն) հասարակական (ընդհանուր) ճաշկերոյթները, հարսանեկան և այլ տօնային զւարճութիւնները ու պարերը։

Միևնոյն հրապարակ-կտուրի վրայ քրդուհիները կըփռեն, չորացնելու համար, նոր խաշած ձաւարը, լւացւած աղոնը, կանաչ ծխախոտը և կեաւուրներէն գողացւած տաւարի մորթերը։

Ապրիլ ամսի կէսերէն սկսած մինչև աշուն—մինչև սեպտեմբերի վերջերը, նոյն այդ կտուրները կըփոխւին ընդհանուր կամ համայնական-ննջարանի։ Բոլոր գիւղը կըգիշերէ այդ ննջարանում։ Ձեզ

նման պատուական հիւրն էլ բաղդ կ'ունե-նենայ հանգչելու միևնոյն ննջարանում, պայծառ երկնքի տակ, հազարաւոր զոյ-գերի մէջև, որոնք մի-մի ծակոտած փա-լասի հովանաւորութեան ներքև անուշ-անուշ կըխռմփացնեն՝ առանց ուշք դար-ձնելու զանազան աւելորդ ձևականու-թիւններին։

Հետաքրքիր է, մանաւանդ, առաւօ-տեան դէմ, երբ քիւրդ մոլլան—ոչ այն-քան ջերմեռանդութենէն թելադրուած, որքան մի աւանդական սովորութիւն յար-գած լինելու համար—ժողովրդէն վաղ վեր կացած՝ քերուելով, մռմռելով, յօ-րանջելով, աչքն ու բերանը բաց ու խուփ անելով և սիրուն մեղեդային ձայնը գըլ-գըլացնելով—կըկարդայ սապահին (saba-hi—վաղորդեան աղօթք)։

Մոլլի ձայնէն կըզարթնին բոլոր... ննջեցեալները և ամեն կողմ կըտիրէ զը-ւարթ կենդանութիւն։ Կեանքը եռ կ'ու-գայ և ծեզ էլ—որ մոլլի գեղգեղումներէն

վերասլացած էիք դէպի մի ուրիշ աշխարհ—այո, ձեզ էլ կրնէրշնչէ շարժւելու գործելու ախուն։ Այո, հետաքրքի՛ր է այդ տեսարանը, որմէն ձեր ուշադրութիւնը կըգրաւէ բազմանդամ նախիրի հրաժեշտը՝ միացած Հայաստանի մթնոլորդը յղող երգիչների դայլայլիկին։

Քրդու տան ներսը զուրկ է առանձին զարդարանքէ. պատերը չեն կրեր որևէ որմնակար, որով այնքան հարուստ է տաճկահայ գիւղացու բնակարանը։ Քըրդու տան զարդերը կըկազմեն գորգերը, կապերտները և զէնքերը, որոնց մասին մանրամասնօրէն պիտի խօսիմ իր տեղում։ Միայն պղնձեղէններն են, որ իրենց վրայի խորհրդաւոր տառերով ու նախիշներով կը գրաւեն ձեր ուշադրութիւնը։

Մարապալարի տան առջևն է ընդարձակ փարախը, որ ոչ այլ ինչ է, եթէ ոչ անճաշակ կերպով ճաղաններով ցանկապատած մի տարածութիւն, ուր կըգիշերեն կենդանիք ամառուան եղանակին։

## 2. ԱՂԱԼԱՐԻ ԱՊԱՐԱՆՔԸ.

*Բոլորովին ուրիշ տեսք ունի և ուրիշ էլ կազմութիւն աղալարի ապարանքը, որ քըրդերը կըկոչեն խոնախ* (Khonakh) *կամ սարայ* (saraï)։

*Խոնախում դուք կըհանդիպիք կանոնաւոր լուսամուտների, վանդակապատ պատիկոնների, սրահների, շքեղագիր ու առատահոս աղբիւրների, պարսպապատ հէվլիւների* (hévlü—*գաւիթ*)․ *շէնքերը կըլինին երկյարկանի և նոյնիսկ երեքյարկանի․ խոնախները շրջապատուած կըլինին գեղեցիկ պարտէզներով ու այգիներով։*

*Ցեղապետների տները՝ ներսէն ու դըրսէն բաւական նման են քաղաքակիրթ երկրների բնակարաններին, այն զանազանութեամբ, որ խոնախների կտուրները տափարակ են։*

## 3. ԽԱՇՆԱՐԱԾՆԵՐԻ ԲՆԱԿԱՐԱՆԸ.

*Այս քրդերի բնակարանները չատըր-ներն* (шатыръ—*վրան*) *են՝ մաղէ, թաղի-քէ, քաթանէ կամ պրէզէնթուկէ (կոշտ փառուսինէ)։ Վրանները կըգործեն հայե-րը և լազիստանի յոյները։ Մաղեղէն վը-րաններ կըպատրաստեն և՛ իրենք քըր-դերը։*

*Եթէ չ՚հաշւենք ցեղապետների օթե-կաշատ վրանները, մնացեալ բոլորն ու-նին հետևեալ ձևն ու դասաւորութիւ-նը։—*

*Վրաններն իրենց ձևով բաւականին նման են կիսաբաց հովանոցի* (ЗОНТИКЪ), *որի ամբողջ ծանրութիւնը կըհանգչի մի սիւնի վրայ՝ ցցուած նրա կենդրոնումը։ Վրանի փեշերն ամրացրած են գետնի վը-րայ փայտէ կամ երկաթէ ցցերով։ Մի անկիւնում քառակուսի կամ եռանկիւնի բացւածքը կըծառայէ դռան տեղ, ուրկէ կերևի վրանի ներսը։ Ահա այդ վրանի*

ներքեւն է քիւրդ ընտանիքի տնային բո-լոր ժանրոցքը։

## 4. ԽԱՇՆԱՐԱԾՆԵՐԻ ՑԵՂԱՊԵՏՆԵՐԻ ԿԱՄ ՍՈՒՐՈՒՃԻՆԵՐԻ ՎՐԱՆՆԵՐԸ.

Ցեղապետների վրանները կըզանազան-ւին միւսներէն թէ՛ մեծութեամբ, թէ՛ կազմութեամբ և թէ պաստառի (կտոր) ազնւութեամբ։

Վրանը լարւելիք տեղին վրայ նախա-պէս կամբարձնեն մի քանի գլանաձև նե-ցուկ-փայտեր, մօտ 1—2 մէթր հեռու իրարմէն և շուրջ 5—6 մէթր բարձրու-թեամբ։ Այդ ցցերի վրայ էլ փռւած է վրանը, որի քղանցքները վերոգրեալ ձե-ւով ամրացրած են գետնին։ Վրանի բուն կենդրոնումը կըբարձրանայ՝ օժանդակ ցցերէն բարձր մի սրածայր և բուն կա-տարին դրօշակ ամրացնելու յարմար ձողը, որի և միւսների միջև, ծայրերի մօտ, պաստառը կըստանայ դըւագաձև ծալ-

քեր։ Իսկ ներսը, իւրաքանչիւր 2 ցցերի արանքում, կախուած է միջնորմ-վարագոյր, պատրաստուած միեւնոյն կամ աւելի ազնիւ կտորէ, գոյացնելով երկու կողմերում առանձին-առանձին բաժանմունքներ։ Ահա այդ բաժանմունքներն են, որոնցմէ մին կըծառայէ որպէս միսաֆիրլիք (հիւրասենեակ), երկրորդը, հարէմլիք (կանանոց), երրորդը՝ ննջարան, չորրորդը՝ իպատէթլիք (աղօթատեղի) մի ուրիշը՝ քիլէր (մառան)....։

Խոհանոցը (մութֆախ—աշգանէ) առանձին շինած է հողէ։ Վրանների շուրջը, առհասարակ, անձրեւային ջրերը ներս խուժելն արգելելու համար, կըփորեն խրամատներ (ակօսներ)։

## 5. ԽԱՇՆԱՐԱԾՆԵՐԻ ՀԻՒՂԵՐ.

Վրանների փոխարէն մենք կըհանդիպինք երբեմն պարզ հիւղերի (землянка) և այդ գլխաւորապէս այն վայրերում, ուր ձմերելու է խաշնարած քիւրդը։

Գետինը 1—2 մէթրաչափ փորելէ յետոյ ցանկացած տարածութեամբ՝ նրա երեք կողմէն կըբարձրացնեն պատերը՝ հիւսելով մացառէ և ներսէն ու դրսէն կոշտ ցեխով ծեփելով։ Երկու երկար պատերը որքան բարձրանան՝ այնքան կըթեքուին դէպի ներս և վերջապէս երկսի գագաթը միանալով՝ կըհանգչին հաստ գերանին վրայ, որ յենած է մի քանի սիւներին։ Երրորդ եռանկիւնաձև պատը բարձրանալով կըծածկէ շէնքի լայնութեան մի ծայրը, որի դէմ կամ բոլորովին բաց է՝ մուտքի համար և կամ դուռն անցկացած։ Առաստաղի գերանէն կախուած է երկար հաստ շղթան, որմէն կըկախեն ունկնաւոր խաղկինը՝ կերակուր եփելու, կաթը տաքացնելու և այլնի համար, ուրովհետև այդպիսի հիւղերում կըրակը կըվառուի մէջտեղումը և ծուխը դուրս կ'ուգայ դռան բացուածքէն. կան հիւղեր էլ, որոնց մէջ, յատուկ ծխնելոյզի համար,

առաստաղէն կըթողնեն մի փոքր բացուածք որ կըկոչուի փխերիկ։

## 6. ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐ.

Անհրաժեշտ կըհամարեմ նկատել այստեղ, որ վերջին տարիներս, կարծես, մի տեսակ փոփոխութիւն կընշմարուի նստակեաց քրդերի բնակարանների ձեւին մէջ։ Այնպէս կ'երեւի, որ քրդերը կըձգտին իրենց բնակարանները ձեւով ու կազմութեամբ նմանեցնել հայ գիւղացու բնակարանին։

Չ'մոռանամ շեշտել և այն պարագան, որ քրդերն եւրոպականացած՝ կամ ըստ իրենց ասենք՝ «քաղաքացիացած» կըհամարեն այն ցեղակցին, որը այս թէ այն կերպ կընմանի հայերին։ Քրդու համար զարգացման, յառաջադիմութեան նըպատակակէտը հայկական կեանքն է, ինչպէս մեզ համար—եւրոպականը։

**Հայի օճառը քրդերի ամենաբարձր համալսարանն է։**

**— «Ախրըլ էղը ախրըլը ֆըլլան է» (*հայի խելք ունիս*)—կրնշանակէ՝ *փիլիսոփայ ես*։**

## Դ.

# ՔՐԴՈՒ ՀԱՑԸ, ՕՃԱՂԻ ՇՈՒՐՋԸ ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐ ԵՒ ԱՄԱՆՆԵՐ

~~~~~

### 1. Քրդու հացը.

I. **Թոնիրը** (*թանտուր*, *թոնտիր*) քըրդերի մէջ գործածական չէ։ Հազարէն մէկ՝ թոնիրի չէք հանդիպիր, եղածներն էլ հայ գիւղերումը հաստատուած քրդերի մօտ պէտք է փնտռել։ Սակայն ջրաղացներումը կըտեսնենք մենք ուղղակի հայկական թոնրի ձագը—փոքր տեսակը, որոնց մէջ կ'եփէ քիւրդ ջրաղացպանը պատուական բաղարջ (չթթուած խմորէ) պատահական անցորդների կամ հէնց իրա համար։
~~~~~

II. Թոնրի ծառայութիւնը կըմատուցանէ քրդուհուն օճաղի կողը։ Օճաղը շինած է հարմիր կաւէ և ունի 1/2—3/4 մէթրաչափ բարձրութիւն, իսկ ձևով նըման է կիսալուսնի։ Օճաղի կողը թեժացած կրակէն «թարկ» դառնալով—շիկանալով՝ կընդունէ հացի թանձրկէկ խմորը և ընդամենը 3—5 րոպէէն կ'եփէ կըպատրաստէ նանէ օճաղը (օճաղի հաց)։

III. Քրդուհին հաց կ'եփէ և՛ այն սալաքարին վրայ, որ ձգւած է օճաղի ներքև և որի վրայէն անպակաս է նուիրական օճաղի կրակը։ Երբ բարկ կրակէն ներքևի սալաքարը տաքացած է՝ կրակ կարած, քրդուհին սալաքարի վրայէն կըհեռացնէ կրակն ու մոխիրը, կըմաքրէ՝ յատուկ այդ նպատակին ծառայող մի լաթով և այնուհետև թանձր խմորը կըփռէ սալին վրայ։ 5—10 րոպէէն կամ առ առաւելն 1/4 ժամէն պատրաստ է «սալի հացը»։ Ի դէպ. սալաքարը պատրաստուած է անպայման կամ շերտաքարէ

կամ մոխրագոյն կարծր աւազաքարէ (կորս)։

IV. Գրդու ամենաշատ գործածած հացըն է սաճի (sadj—саджъ) վրայ եփածը, որ կըլլինի երկու տեսակ—լաւաշ և թանձըր։—Լաւաշը օխլաւուով (փայտեայ գլան) բարակացրած խմորն է, որ ամենակարճ միջոցում կ՚եփի՝ թէժ կրակի վրայ կատաղած սաճի երեսին. Թանձըր՝ չրայի, մածունի նման խմորն է, որ ըըրդուհին գտալով կըլեցնէ թեփ ցանած սաճին վրայ և 10 րոպէէն կըպատրաստէ փափուկ, բըրուշ սաճի հացը։

Կան տեղեր, ուր հացը կ՚եփեն ամեն օր, բայց կան և այնպիսիք, որ մի քանի օրուանը միանգամէն կ՚եփեն։ Իսկ հացի նիւթերն են՝ գարի, կորեկ, կըլկըլ և շատ քիչերի մօտ՝ ցորեն։

## 2. ՕՃԱՂԻ ՇՈՒՐՋԸ.

Գրդերի համար վերոյիշեալ հացերէն

ամենանուիրականը օճաղի հացն է, որի անունով կ'երդուի քիւրդը և նրա այդ երդումը աննահանջելի է։ Այդ նշանակութիւնը, իհարկ է, պէտք է վերագրել օճաղին, որովհետև քրդու համար օճաղը նոյն նշանակութիւնն ունի, ինչ որ մի լուրջ գաղափարականի համար՝ իր իտէալը։

Քրդերն ունին մի զարհուրելի անէծք, որին կ'ենթարկուին միայն ամենամեծ յանցաւորները, այդ անէծքը հետևեալն է.
—Օճաղ է'դը քօռ պի (odjagh ète cor bi) —օճաղդ չքանայ, օճաղիդ կրակը մարի, օճաղիդ ծուխը չ'բարձրանայ են։

Նոյնպէս ուշադրաւ և ամենափառաւոր օրհնէնք կըհամարուի հետևեալը. «Օճաղ է'դը շէն պի»—օճաղդ շէն մնայ։

Բալուի մօտ, դէպի արևմուտք, Արածանի գետի աջ ափին վրայ, մի գիւղ կայ Սէյտիլար (sèïdilar) անունով։ Սէյտիլարն իր անունն ստացած կ'երևի մօտաւորապէս քուրմ նշանակող սէյիտ բառէն։ Այդ

գիւղում կան մի շարք հին, բազմադարեան, աւերակ շէնքեր, որոնց մէջ օճաղի նման վիմափոր և կերտուած փոսիկներ կան. ահա այդ փոսիկները մինչև այսօր էլ ամենամեծ ջերմեռանդութեամբ կը պաշտուին թէ՝ Քիւրդ և թէ Հայ ժողովրդի կողմէն։

Սէյտիլարի օճաղնե՞րը—ինչ սրբազան, ինչ դիւթիչ ու պատկառելի բառեր են դրանք Բալուցոց համար և որպիսի հրաշքներ ժողովուրդը կը վերագրէ այդ օճաղներին (ատրուշան?), կարծեմ ոչ մի հիւանդութիւն չէ կարող յարատևել, եթէ գոնէ 3 անգամ այցելես այդ սրբազան օճաղներին, խունկ ու մոմ վառես և մաքուր հաւատքով աղօթես!

Նոյն իսկ Բալու քաղաքում (ս. Լուսաւորչի թաղում, «Քուրաչեան» փողոցի վրայ, Արամեանների տանը դէմ) «Սըրբիեան» անունով մի օճաղ մինչև 1896 թւականը ջերմեռանդութեամբ կը պաշտւէր ինչպէս հայոցմէն այդպէս և քրդերէն։

* * *

Քրդական առասպելներէն մէկը կըպատմէ հետևեալը, որ անհետաքրքրելի չի լինիր առաջ բերելը.—

«Աստուծոյ ահն ու դժոխքի երկիւղը սրտէն հանած մի հարամզատա էշիրը քիւրդ՝ սատանայէն անձայով լլկեց իրա հարազատ կոյս քրոջը պատիւը և մեղքէն յետոյ միայն զգալով իրա յանցանքի ծանրութիւնը՝ ծունկ չոքեց դէպի հարաւ ու երկա՜ր աղօթեց... աղօթեց ու լացաւ, լացաւ ու աղօթեց, մինչև որ Աստուած ուղարկեց նրա մօտ Ճէպրայէլ մէլայէքին (Djèbraèl mèlaéqu—Գաբրիէլ հրեշտակապետ) և Հազրէթի Իլիմ թէմու'ամ Սուլէյմանին (Hazréthi ilim thèmou' am Souléïman-—իմաստութեան Հայր Սողոմոն). Աստուած ասաց նրանց.—Կ'երթաք այդ հարամզատա էշիրին և կ'ասէք, որ մի խլուրդ գալու է ամեն օր, անյայտ ժամերի, միզելու հարամզատա էշիրի նր-

ւիրական օճաղին մէջ. այդ պիտի տեւէ 40 օր, 40 ժամ և 40 ակնթարթ. եթէ հարամզադա էշիրը կարողացաւ այդ 40 օրը, 40 ժամը և 40 ակնթարթը անթարթ աչքերով անցկացնել՝ ծունկ դրնելով օճաղին առջև և շարունակ աղօթելով, այդ դէպքում Ալլահը պիտի ներէ հարամզադա էշիրի—այլ պարագաներում աններելի—յանցանքը. իսկ եթէ չ'կարողանայ հարամզադա էշիրը կատարել այդ պայմանը և թէկուզ մի րոպէ քուն մտնի, կամ ծունկը քաշէ, կամ աղօթքն ընդհատէ, այն ատեն մէկ կողմէն խլուրդը պիտի միզէ նւիրական օճաղին մէջ և միւս կողմէն էլ Ալլահը պիտի անիծէ հարամզադա էշիրին պապենական օճաղը...»:

Լսելով այդ խիստ պայմանը, որ բառ առ բառ արտասանեց Հաղբէթի Իլիմ Թէմու'ամ Սուլէյմանը՝ վկայ և պատուհասող ներկայացնելով ճէպրայէլ մելայէքին,—հարամզադա էշիրը պատասխանեց.

— Ես մեղաւորների մեղաւորս Ալլահի... ի մի հիւլէն եմ ու ձեր ոտքին մոխիրը, բայց չէ՞ կարելի արդեօք աղաչել Ալլահին, որ օճաղս անիծելու փոխարէն խլէ ինձմէն 7 որդիքս, տունս ու տեղս, հետն էլ հոգիս ու ճէհէննէմի փայ անէր ինձ...

— Բայց ինչո՞ւ չընդունեցիր մեր պայմանը, հարցուց Հազրէթի Իլիմ Թէմու՚-ամ Սուլէյմանը։

— Ծանր է և անհնար, պատասխանեց հարամզադա էշիրը։

— Պայմանէն աւելի ծանր է քո յանցանքը, նկատեց Ճէպրայէլ մէլայէքը։ Հարամզադա էշիրը ճարահատեալ ընդունեց խիստ պայմանը և անմիջապէս սկսեց աղօթել անթարթ աչքերով, դէպի օճաղը ծունկ չոքած... 40 օր, 40 ժամ և 39 ակնթարթ այդ դիրքով նա կաղօթէր... Ծնկները քար դարձան և ձուլեցան օճաղի առջևի նուիրական քառակուսի քարին հետ... Նրա աչքերը բիւրեղացան,

ձեռքերը դէպի վեր «քուլթրում» եղան և հարամզադա էշերի շունչը կտրեց… Մի ակնթարթով դաւաճանել էր հարամզադա էշերը իր ուխտին և Նրա օճաղը թրջւեց խլուրդի մէզով ու Ալլահի անէծքը իջաւ այդ օճաղի մոխրին մէջ…

— Ալլահը 7 բուռ արիւնս խմող տիւշմանին չ'ենթարկէ թող այդպիսի անէծքի, կրվերջացնէ ծերուկ քիւրդը խոր «ա՜խ» քաշելով և կ'ստիպէ ձեզ էլ, որ «ամի՜ն» ասէք, որովհետև «օճաղի անիծւելը» կատակ չէ…

Հարամզադա էշերը մինչև այսօր էլ իրա բիւրեղացած աչքերովը կընայի՜ անիծւած օճաղին վրայ և 7 գոյն արցունքները անընդհատաբար կըգլորւի՜ն քարացած կոպերէն ցած… Ռոյ'է մաշէրին (վերջին դատաստանին) հարամզադա էշերը նորէն պիտի դատւի. սակայն Նրա նւիրական օճաղը, կ'ասեն, ազատւելու չէ Ալլահի անէծքէն…

Այդ առասպելի մի քանի վարիանդները

կան քրդերի մէջ, որոնցմէ ամենահետա-քրքիրը վերև նշանակած է. ու այլեւ ուխտորդ կըսեպեմ իջնալ մանրամասնութեանց մէջ, այդքանը բաւական համարելով՝ մի հարևանցի գաղափար տալու համար սիրելի ընթերցողներիս քրդու հայեացքների մասին դէպի օճաղը։

***

Այժմ կ'ուզամ նկարագրելու այն առարկաները, որոնք կըգտնուին օճաղի շուրջը։

Օճաղի մօտ դուք կըհանդիպիք երկաթէ ունելիին (մաշա), շամփուրին (տեստօն-déston), փայտէ թակը (էզըն քուլա —ésen coula), շիշը (կրակախառնի—կէլպէրի— guèlbéri), ճաղլին (djaghlin—որ խաչերկաթին կէսն է իսկապէս և կըհանգչի օճաղի երկու հանդիպակաց պըռկունքների վրայ), սաճը, սաճի քերիչը, կասկարան և եռոտանին։ Օճաղի ծըխնելոյզին մէջ, 1—2 մէթրաչափ բարձր, զարկած են մի քանի փայտէ կամ երկաթէ

ցցեր, որոնց վրայ կրկախէ քիւրդը իր թրջած գուլպան, շապիկը, տրեխը՝ չորացնելու համար, ծխի մէջ, օճաղի ջերմութեամբ։

## 3. ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԸ

Օճաղէն քիչ վերև, պատին վրայ, ամրացրած է ճրագդիրը (ճայէ չրախ—djaïè tchrakh—ճրագակալ)։ Յիշենք այստեղ քրդերի մէջ գործածական լուսաւորութեան առարկաները։ Ահա դրանք.

I. Փոքրադիր կաւեղէն ճրագը, որ բոլորովին նման է պատմական ամենահին ճրագներին (դրանց իսկ յար և նման նրկարով ժամանակակից գիտնականները կ'որակեն կուլտուրական «լոյսը»)։ Այգ ճրագի մէջ կըլեցնեն կտաւահատի և կամ էնէկէշէքի իւղ—ձէթ (պէգըր), որ կըծծւի բամբկէ կամ մանածէ պատրոյգէն (Ֆիտիլ) ու ճրագի թեքուն անկիւնէն կ'արձակէ իր շառագոյն լոյսը։ Նոյն ճրագը և նրա մի քանի տեսակները գործածական

են նոյնպէս Տաճկա-Հայաստանի շատ հայ գիւղերում և նոյն իսկ մի քանի քաղաքներում (Բաղէշ, Խարբերդ, Բալու, Նեղի, Փէրի են)։

II. Սպիտակ թիթեղէ շատրուան ճրագը, որի մէջ նաւթը կրվառի և կ'արձակէ հեղձուցիչ ծուխ։

III. Մուշամպայ փէնէրի, բազմատեսակ լապտերների (фонарь) մէջ ամենաշատ տարածուածն է սա, որ կրշինուի՝ շապիկը թափանցիկ մորթէ, մոմակալը—ներքևի թասախը—և կափարիչը—վրայի խաբախը՝—պղնձէ կամ արոյրէ և կամ երկթէ. այդ հետաքրքիր լապտերները, որ Փէնէրճիի (լապտերակալ) ձեռքին մի մեթրաչափ կրկախուին և թափանցիկ մորթէն (գոյնզգոյն ներկած ու մեղրամոմով պատած) դուրս կրցոլացնեն մռայլ լոյսը՝ մէջը վառող մոմին, և մոմը մարելէն յետոյ շապիկը կրծալլուի ու կրճնշուի մոմակալի ու կափարիչի արանքումը, որով և գրպանում տեղաւորելու յարմար դիրք

կ՚ստանայ։ Այդ լապտերներն անխտիր կը-
գործածուին թէ Հայերի և թէ Քրդերի
մէջ։

IV. Շամտանը (մոմակալ) նոյնպէս ան-
ծանօթ չէ քրդուն։ Արոյրէ բազմատեսակ
և զանազան մեծութեան մոմակալները,
մանաւանդ ցեղապետների խոնախներում,
գիշերները կըլուսաւորեն քրդու հիւրա-
սէր սեղանը։ Շամտանների մէջ կ՚սպառեն
տաճկա-հայերի ձեռքով պատրաստուող ա-
մենահասարակ ճրագլի մոմը հաստ-հաստ
պատրոյգներով։

V. Ցեղապետներէն ոմանք իրենց ապա-
րանքները կըլուսաւորեն՝ սեղանի, պատի
և կախովի լուսամփոփաւոր լամպերով։

VI. Կ՚արժէ յիշել այստեղ, որ քրդու
բնակարանում շատ քիչ անգամներ կըվա-
ռեն դրանցմէ որևէ մէկը, որովհետև ձմեռ.
ժամանակ օճաղում շարունակ պլպլացող
փայլուն կրակը կըլուսաւորէ համճոյապէս.
իսկ ամառները՝ Հայաստանի կապուտակ
երկնակամարի անթիւ լուսաւորները կը-

պէծպծան քրդերի գլխին վերև, համայնական նկարանում։

## 4. ԱՄԱՆՆԵՐ.

Քրդերի մէջ գործածական ամանեղէնները պէտք է բաժանել 4 տեսակի, ա. կաւեղէն, բ. պղնձեղէն, գ. փայտեղէն և դ. քարեղէն։ Ես կընկարագրեմ իւրաքանչիւր տեսակն առանձին և որքան կարելի է մանրամասն կերպով։

I. Կաւեղէնները.—Պէտք է նկատել էն առաջ, որ բրուտի կամ կաւագործի արհեստը քրդերի մեծամասնութեան է, համարեա, ամբողջ Տաճկաց-Հայաստանում (թէև կան ուրիշ ազգերէն էլ աւելի զարգացած բրուտներ)։ Բայլուի մօտ, Աղբակ կամ Էքբէկ քրդաբնակ գիւղի բոլոր բնակիչները կ՚զբաղին բացառապէս բրուտութեամբ և բաւական էլ նուրբ ամանեղէններ կըպատրաստեն։ Քրդերի մօտ գործածական կաւեղէն ամանները հետևեալներն են.

ա. Կարաս (քիւփ—Küp-Кюпь), որ կըլինի զանազան մեծութեան ու ձեւի. սովորաբար կարասների բերանն ու «ոտքը» (տակը) միեւնոյն լայնութեան կըլինին. իսկ ձեւով շատ նման են կախ-խնոցիի։ Այդ կարգի կարասներէն խոշորները (20—60 դոյլաչափ) կըգործածեն ամպարի տեղ։ Կարասների փորերը (դրսի երեսները) յաճախ զարդարուած են շատ տեսակ նախշներով ու գծագրութիւններով։

Այդպիսի կարասներէն մէկին մէջ մտաւ առասպելական ամենակարող ջատուկ պառաւը («Քիւփէ պինան») և բարձրացաւ մինչև եօթներորդ երկինք՝ իր հետ տան ամելով բազմաթիւ մարդկանց։ «Եղան թերահաւատ մարդիկ, կ'ասեն քրդերը, որոնք այդ հրաշքը վերագրեցին «քիւփէ պինան կէօկէ չըխան» պառաւի շնորհքին, բայց իսկապէս հրաշագործը կարասըն է... Չէք տեսներ՝ ինչպէս կըպատասխանէ կարասը քո ամենափոքր ձայնին անգամ (կ'արձագանքէ). կըպատմեն, թէ

կարասների նախահայրը մարդ է եղել և անիծելով է հող դարձել, ապա խո-րամանկ բրուտները՝ կաղապարելով եր-բեմնի մարդ-կարասին՝ նրա օրինակները շատացրել են (Առասպել)։

բ. Չէօչեր (tcheutch—чёчь—«բղող»), որոնք նման են կարասի կէսին և կըգոր-ծածւին զանազան հեղուկ պաշարների համար (ռուփ—պէքմէզ, ձէթ, մեղր ևն)։

գ. Կիւվէճներ (güvedj-гюведжъ-պտուկ, պուտուկ) զանազան ձևերով. մի մասը, որ շինւած է աւելի ազնիւ ու բարակ կաւէ, կըծառայէ որպէս խաղկին՝ կերա-կուր եփելու համար։ Խիստ յարգի է պտուկի մէջ եփած խաշը, սինկիրը, տէօ-չէօրպան ևն։ Աւելի կոշտ տեսակների մէջ կըպահեն իւղ, պանիր, չորթան ևն։

դ. Քառղան (կըհնչւի իբր քիէրղիէն—quièrghién-кѣргѣнъ) որ կըծառայէ կոնքի տեղ և երբեմն էլ որպէս սկաւառակ։

ե. Լուլիկ կամ լիւլյիկ (luillic-люльикъ),

կրծառայէ չրածիկի (իւպրէխ) տեղ, մանաւանդ ապտէսթ-ի ժամանակ։

զ. Սիւզկէչ (süzguètch—քամոց, քամիչ)։

է. Չանախ. մօտ 10 տեսակ ափսէներ կան կաւէ շինած. իսկ չանախ-չէօմլէք անելով՝ պէտք է հասկանալ աման-չաման։

ը. Քիւրդ ցեղապետները կաւէ խողովակներով (փողանկ) աղբիւրի ջուրը կըտանին ապարանք։ Փողանկը ագուգայի դեր կըխաղայ։

թ. Հասդիր (hastir—տաշտ)։

ժ. Սումախի, ջրի ամենամեծ կուժն է։

ժա. Սումախի փոքրերին կըկոչեն հապանա (habana)։

ժբ. Քառազները նոյնպէս ջուր լեցնելու փոքրիկ ամաններ են, ձեւով նման ջրածիկներին։

ժգ. Գըլգըլիկներ, քառազներէն էլ մանըր ամաններ ջրի համար, որոնց Բալուցիք «բադիկ» էլ կ'անուանեն։

Ջրի այդ ամանները գործածական են հայերի մէջ էլ։

---

II. Պղնձեղէնները. — Քրդերն իրենց պղնձեղէն ամանները ձեռք կբերեն Տաճկա-Հայաստանում Հայ պղնձագործներէն, որոնք բաւական զարգացած են այդ արհեստում ու կրպատրաստեն շատ տեսակ իրեր։ Անուանի են Եւդոկիոյ (Թոքաթ) պղնձեղէնները և են հետևեալք.

ա. «Խավուռմայի» համար առանձին լայն ու ցածլիկ կաթսան կրկոչւի Ներխա (Nerkha-Нырха) և է կոնաձև։

բ. Պուլղուր խաշելու համար իւրաքանչիւր գիւղ կամ համայնք ունի իրա 1—2 հսկայական՝ խորունկ, չորս ունկնանի, հաստատաշէն կաթսան. եթէ գիւղը չունի՝ գիւղապետը կ'ունենայ։ Երբեմն էլ մերձակայ 2—3 գիւղեր կըգործածեն մի

հատ, վճարելով որոշ վարձ նրա տիրոջը *)։

գ. Թէնճէրէն, ղազանլըխը, խուշխանան և աշխանան խաղկինի ղանազան տեսակներն են։

դ. Սիդիլ (sitil) նոյն ծառայութիւնը կըմատուցանէ ինչ որ դոյլը։

ե. Թավա (thava) պռչաւոր և ունկնաւոր տապակներ։

զ. Պօշխապի (bochkhabi - бошхаби) և Թէփսի (thépsi-тепси) ափսէների շատ տեսակներն են դրանք, որոնց հետ պէտք է յիշել և լէնկէռը (լանկառ=լայն-կեռ) և Թապախը (պնակ)։

է. Սէնի կամ Սինի (sini-сини-խան). փոլատ (մատուցարան)։

ը. Թաս, պռչով Թաս, սրճաման (ճէզվէ), կովկիթ կամ կԹոց, կումկում կամ

*) Հայերի մօտ Երևան և Ճաւարի կաԹսան եկեղեցիների սեփհականութիւն կըլինի։

կիւկիւմ (gügüm-гюгюмъ-սափոր), մէօշէօ-ֆէ (кружка), բողկի քերիչ (կըլինի և Թիթեղէ), շերեփ, ձագառ, քամոց, քաւ-կիր, զառֆ (zarf-зарфъ-բաժակակալ) ևն ևն։

Թ. Կոնք (էլ լէկէնի-èl lèguèni-эл легени) և ջրածիկ (իւպրէխ)։

Ժ. Կոնք (լէկէն՝ կերակրի և խմորի), տաշտ (Թէշ, Թէշթ, Թաշթ)։

ԺԱ. Էվ-համամի (év-hamami-эвъ гамами-լոքարան). ցեղապետների մօտ միայն կը հանդիպենք այդ ամանին, որ մօտ 1—1½ մէթր խորութեամբ և դրա կէսին չափ էլ լայնութեամբ՝ կը գործածուի միայն բաղանիքում, մէջը ջուր լցնելու համար։

Քրդերի մէջ շրջող ոչ մի արհեստաւոր այնպիսի յարգանք ու հիւրասիրութիւն չի գտներ քրդու կողմէն, որքան հայ պղնձագործ-անագագործները (խալայճի, փախրճի, խազանճի, կլէկճի), որոնք տարին 2—3 անգամ իրենց փուքսովն ու

գործիքներովը և մի քանի աշկերտներով կ'ելնեն գիւղերը ու արօտատեղերը՝ քըրդերի պղնձեղէնները կարկատելու և կլէկելու համար։

---

III. Փայտեղէնները. —

ա. Խնոցի, որի 2 տեսակին կըհանդիպենք քրդու մօտ, այն է՝ մեզանում յայտնի կախ-խնոցին, բարակ-երկար ձեւով, որ առաստաղէն կամ ծառի ճիւղէն կախած չուաններին վրայ անցկացրած՝ քրդուհին կըճօճէ նրան օդին մէջ և ձայնէն կ'իմանայ կարագի պատրաստ լինելը կամ չ'լինելը։ Երկրորդ տեսակը՝ լայնկէկ ու կարճ՝ մի բարձի վրայ պառկեցրած, գետնի վրայ, կըշարժեն յետ ու առաջ մինչև կարագի պատրաստուելը։ Ի դէպ. քրդերը, ինչպէս և տաճկահայերը, կարագը կըհանեն մածունէն և ոչ սերուկէն։

— Սպասի՛ր դու, կ'սպառնայ քիւրդը, քեզ ցոյց կուտամ՝ մածունը եղէն կ'ելնէ

թէ՞ եղը մածնէն», այսինքն՝ տեսնենք ում տասածը կըլլինի։

բ. Խմորի տաշտ՝ նեղ ու երկար. սրա փոքրը կըկոչեն Թեքնէ։

գ. Քիւլէկը կամ Քուլակը փայտեայ դոյլն է, որի բարակ շրջանակները (խասանախ) հայ խզարճիները (տախտակ քաշողները) կըքաշեն կաղամախէ կամ խոչ կաղնիէ և կըվաճառեն քիւլէքճի (դօյլաբար) ազգակիցներին։

Բալուայ Պաղին և Սրին գիւղերի հայերը կըպարապին ստւար մեծամասնութեամբ քիւլէկի շրջանակներ պատրաստելով։ Ցաճախ «Պաղընցի» կամ «Սրնցի» ասելով Բալուցին կըհասկանայ խզարճիներին։

դ. Տոլչա (doltcha-долча), քուլակի նիւթէն, աւելի փոքր է և կըծառայէ թասի տեղ։

ե. Խորունկ չանախներ, որոնք ափսէի տեղ կըգործածւին։

զ. Շերեփներ (չէմչէ) և դդալներ (գօշ.)

վերջիններիս շատ տեսակները կլինին—կլոր ու խորը, հաւկթաձև, երկդիմի (երկու ծայրին էլ գդալ շինած միակտուր փայտէ), տափակ։ Կրշինեն տոսախէ, ծիրանէ, կաղամախէ և այլ փայտերէ։ Սոէպ գդալների կոթերը զարդարում են նախշերով։

է. Դոլիկ (tolig-толигъ), որ նման է փոքր արկղիկի, առանց կափարչի, և կըծառայէ գդալնոցի տեղ։ Դոլիկի կողքէն կախուած է կաշիէ մախաթամանը։

ը. Թաթիկ կամ տաշտի քերիչ։

թ. Ձորթան հարեւու թաղարը կըշինուէ թէ՛ փայտէ և թէ կաւէ ու Բալուցիներէն կըկոչուի չորթընար (չորթան-ա-հար) կամ հասգիր։

ժ. Փայտէ կըշինուի և սխտործեծը իր կոթով միասին։

ժա. Ցիշենք նաև խոնչա'ն (хонча), որ ցածլիկ և զանազան ձևի ու մեծութեան սեղանն է քրդու։

ժբ. Սրանց հետ դնենք և ջրդդումի

ամաններըը, որոնք կըգործածուին փառչի և թասի տեղ։

---

IV. Քարեղէնները. —

ա. Սանտր իրա տեսթիով (désti-կոթ), որ կըգործածուի կորկոտ, ձաւար, կըտաւահատ, շուշմայ ևն մանրացնելու՝ ծեծելու համար։ Սուրհն էլ կըծեծեն սանտի մէջ, բայց հարուստներն ու ցեղապետները ձեռք կըբերեն յատուկ սուրճ աղալու արոյրէ աղօրիք։

բ. Երկանաքար (էլ տէկիրմէնի), որով կ'աղան զանազան հացահատիկներ։ Նոյն բանով կ'աղան քըղերը և չորացրած թութը, որ լաւ չորացնելէ յետոյ կըմանրացընեն ինչպէս ալիւր և կճուճների մէջ կըպահեն, 1—2 ամիս վերջը աղացուած թութը «կըծլի» ու կըդառնայ մի փառաւոր ուտելիք։ Ի դէպ. թութի աղալը մի առանձին հանդիսաւոր երևոյթ է քըղու տանը, ուր կըհաւաքուեն մի քանի բարե-

կամներ և ուհիներ ու հազար ու մի կատակներով, կերուխումով, ուրախութիւններով կ'աղան չախիրը (պաշար) թութը։ Ախորժելի է, մանաւանդ, այն մոմենտը, երբ աղացուելիք թթերէն մի քանիսը մի փոքր թաց լինելուն պատճառաւ երկու աղօրիքների արանքումը կըճնշուեն ու կըգոյացնեն մի տեսակ պաստեխ, որը և կըդժուարացնէ աղալու գործը, մինչև որ վերցնեն վրայի երկանը և պաստեխը պոկեն քարերի կըծքէն։ Այդ պաստեխի վըրայ ի՜նչ կատակներ, ի՜նչ կռիւներ կանեն՝ միմեանց ձեռքէն խլելու համար։ Շատ անգամ քըրդու խորամանկ լամուքը՝ իւր հօրը կամ մօրը օգնելու պատրուակով կընստի աղալու և մատը ծածուկ թըրջելով՝ մի կերպ կըթացացնէ երկանաքարի պռկունքը.

— Մայրիկ, կըկանչէ մի րոպէ յետոյ, երևի թաց թութ է ինկել որ ծանրացաւ քարը։ Կըվերցնեն վրայինը և պատրաստ է արհեստական պաստեխը։

*Տարակոյս չ'կայ, որ այդքան չեն միայն քրդերի մօտ գործածական ամանները—շատերը վրիպած են յիշողութենէս. բայց յոյս ունիմ, որ հետզհետէ պիտի յիշեմ և յետագայ հատորներէն մէկին մէջ պիտի տեղաւորեմ յաւելուածի տեղ։*

## Ե.

# ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ԵՒ ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԳՈՐԾԻՔՆԵՐ.

Երկրագործութիւնը քրդաց մօտ մնացած է ամենախոր նահապետական ձևի մէջ։ Անատոլիական թիւրքիան առհասարակ զարգացած երկրագործութիւն չունի, բայց կան շատ տարրեր, որոնք այսպէս թէ այնպէս մի քանի քայլ յառաջադիմած են. հայերը, յոյները և մասամբ տաճիկները արդէն ընդունել են երկրագործութեան հին սիստեմի անպէտքութիւնը և օրըստօրէ կ'իւրացնեն նորագոյն սիստեմը։ Այդպէս չեն քրդերը։ Միակ բարեփոխու-

թիւնը, որ նկատելի է քրդու մօտ, դա զտիչ մեքենան է, որի մասին ես պիտի խօսեմ ներքևում։ Նստակեաց կամ հողագործ քիւրդը առհասարակ կըխուսափէ բարդ աշխատանքէ և նա երկիրը կըմշակէ, թէև չարաչար աշխատելով, սակայն բաւական թոյլ, անխնամ կերպով՝ առանց ուշք դարձնելու իր պապենական զբաղմունքի հէմտաատը լինելուն։

Զ'նայած սակայն այդ ամենին, քրդերը կըցանեն՝ գարի, կորեկ, կըլկըլ, ցորեն, եգիպտացորեն (լազութ-mais-маисъ), ոսպ, սիսեռ, լոբիա, շուշմայ կամ կնճութ, կտաւահատ, էնէկէչէք, առւոյտ, սեխ, ձմերուկ, վարունգ, պատինջան, դդում, պղպեղ, սոխ (որի համար հոգի կուտայ քիւրդը), սխտոր, բողկ, տակ, ճուլպանտ, քուշնայ, պօյ-պօյ, կանեփ և բամբակ։

Քրդերի այգիներում և պարտէզներում դուք կըհանդիպիք հետևեալ ծառերին.— տանձենի, խնձորենի, սալորենի, բալի, կեռասենի, ծիրանի, թզենի, նշենի, սեր-

մառոտակի՝ չէշէլէ յետոյ անցնենք երկրագործական գործիքներին, որ հետևեալներն են.—

I. Արօր, 3 տեսակ—երկաթէ խոփով և սրածայր փայտով։

II. Ուռերով հիւսած տափակ ցաքան։

III. Մանգաղ։ Գերանդիի գործածութիւնը մտած չէ։

IV. Երկանիւ սայլ, որին կը լծեն գոմէշներ կամ եզներ։ Սայլերի անիւները ունին ամբողջ ժանկերեւոյթ ծեփած կրայ-րով և ձուի կեղեւով։ Սայլի սուր ճռռոցը լսելի է մի քանի վերստ հեռուէն։

V. Երկփեղանի փայտեայ կալսիչ, որի ներքև հագցրած են գայլախազի սրածայր կտորուանք։

VI· Երկժանի (вила) և եօթժանի հոսելիններ։

VII. Բահ, փետատ, քուլպա (բրիչ), լծի (փայտէ և երկաթեայ), մասսա կամ զուկուլթա (բարակ-երկար ծօղ՝ ծայրին սուր երկաթ-մեխ-անցկացրած, կենդանի-

*ներին քշելու համար), հոտոց (կոր գա-նակ՝ այգեգործութեան մէջ կրգործածուի), սակր եւն եւն։*

VIII. *Ցորենն ու միւս հացահատիկները յարդէն կրզատեն՝ թեզը հոսելքով քամուն տալով. կան, սակայն, տեղեր, ուր արդէն մտած են զտիչ մեքենաները* (вѣялка)։

IX. *Բամբակի մէջէն սերմը զատելու համար գործածուող գործիքը կրկոչեն ճըռճըռ. երևի այդ անունն ստացել է գործելիս արձակած ճռճռոցի պատճառով։*

*Կան քրդեր, որոնք գիտեն և ծխախոտի մշակութիւնը։*

## Զ.

## ՈՐՍՈՐԴՈՒԹԻՒՆ.

Բոլոր քրդերի մէջ ընդունուած և հաճոյական զբաղմունք է որսորդութիւնը, որ 3 ճիւղերի կըբաժանուի.

Ա. Թռչնորսութիւն.

Բ. Վայրենի կենդանեաց.

Գ. Ձկնորսութիւն.

Խօսենք իւրաքանչիւր ճիւղի համար առանձին։

### I. Թռչնորսութիւն.

Թռչուններէն կ՚որսան՝ կաքաւ, աղաւնի, վայրի բադ և սագ, թթակեր

(Թութ խուշի), ճնճղուկ, լորամարգի և ն.։

Թռչուններ որսալու համար կըգործածեն կամ հրացան՝ ուղղակի զնդակահարելով և կամ ցանցերի մէջ նրանց ոտքերը խճճելով։ Հետաքրքիր է մանաւանդ կաքաւի որսը, որ մանրամասնօրէն կընկարագրեմ։

Իմանալով մի կերպ, թէ որտեղ է հաւկիթ ածել մարի կաքաւը և ձագ է հանելու՝ քրդերը կըհետևեն նրանց, մինչև որ ձագերը գոյանան ու մի քիչ էլ մեծանան. դեռ ևս թռչելու անընդունակ վիճակում քիւրդը անզէն դարան կըմտնի, երբ առաւօտեան լուսաբացին, մարին շրջապատուած իր նազելի ձագուկներով կ'երթայ ջուր խմելու, ձագերին խմցնելու և տոտիկները մաքրելու,—յանկարծ դարանամուտը կըյարձակւի և կըտիրանայ ձագերին։

Ահա այդ ձագերէն մի-մի զոյգ (արու և էգ) մեծ խնամքով կըպահէ քիւրդը մասնաւոր վանդակներում։ Ամենակարճ ժա-

մանուկէն կընտելանան կաքաւները և այ-
նուհետև կըհաշուին քիւրդ ընտանիքի
անդամներ. նրանք ազատ համարձակ կը-
շրջին տան մէջ և ոչ ոք չի համարձակիր
թէկուզ մազաչափ վշտացնել նրանց. այդ-
պիսի յանդուգին կ'սպառէ խիստ պատիժ
տան նահապետի կողմէն։ Միաժամանակ
քիւրդը իւր գրգռող, տաքոտ սուլոցով
ուզած պահուն կարքնձելու կընտելացնէ
կաքաւներին։ Երբ արդէն բաւական կը-
մեծանան կամ ուրիշ խօսքով սրբունքի
կըհասնին՝ տէրը նրանց կըտեղաւորէ ա-
ռանձին-առանձին վանդակներում։ Միա-
սին ծնած, միասին սնած արուն ու էգը
իրենց նոր աքսորավայրերում—թէև ի-
րարմէ հազիւ մի քանի մէթր հեռուն,—կը-
կարօտին միմեանց ու իրենց սրտամաշ կա-
րօտը փարատելու համար կ'սկսին փոխ
առ փոխ երգել. ամենամաքուր, իսկական
սիրոյ մրմունջներն են այդ երգերը! Օրա-
կան մի քանի անգամ տէրը նրանց կ'ար-
ժանացնէ իրար տեսութեան։ Այժմ նրանք

սիրահարուած մի զոյգ կըկազմեն. դըրա-նում տարակոյս չ'կայ. հետևաբար ժամանակն է, որ տէրը շահագործէ նրանց այդ սիրահարութիւնը։ Կաքաւներն այդ միջոցներումն է, որ ծառայելու են իրենց տիրոջ նպատակին։

Կամենալով գնալ կաքաւ որսալու՝ քիւրդը 3—4 օր սիրահարներին չի միացնեն և այդպէս կ'առնէ իւր հետ նրանց ու կըբարձրանայ սարերը կամ ուր որ կաքաւ կայ։ Երկու վանդակները իրարմէ մի քանի տասնեակ սաժէն հեռաւորութեան վրայ կըկախէ ծառերէն կամ կըդընէ ժայռերի խոռոչներում. իսկ ինքը կըհսկէ մէջտեղումը։

3—4 օր շարունակ միմեանց կարօտով տոչորւող սիրահարները կ'սկսին սրտակոտոր դայլայլիկով գեղգեղել իրենց դառնագոյն վիշտը։ Հրաշալի՝ բայց և յուզի՜չ մեղեդի, որ կըգրաւէ լերան ազատ կաքաւներին որսացողների շուրջը։ Երբեմն հարիւրաւոր կաքաւներ կըհաւաքուին սի-

բոյ մեղեդին ունկնդրելու. սակայն, ի մեծ դժբաղդութիւն նոցա, որսորդի լարած ցանցը կամ հրացանի գնդակիկները կըխլեն նրանց ազատութիւնը։

Որսը վերջանալէն յետոյ՝ տէրը իւր «երկու աչքի լոյսերին» կըհասցնէ իրենց մուրազին—կը ներփակէ նրանց մի վանդակում և կըվերադառնայ տուն։

Միւս թռչուններին մեծաւ մասամբ կըգնդակահարեն։

## II. Վայրենի Կենդանեաց.

Որսի կենդանիներ կըհամարւին՝ աղւէսը, նապաստակը, այծեամը, եղնիկը, ճագարը, սկիւռը, կինճը, շնագայլը, գայլը, արջը, ոզնին ևն ևն, որոնց որսալու համար քրդերը կըգործածեն զանազան թակարթներ, որսորդական շներ և զէնքեր։ Որսի մորթիներէն բաւական արդիւնք կ՚ստանան քրդերը։

## III. Զկնորսութիւն.

Ամենահետաքրքիր որսորդութիւնք քրդերի մօտ իսկապէս ձկնորսութիւնն է։ Քրդերը բնակւելով ջրառատ Հայաստանում, բնականաբար, պէտք է հետամուտ լինէին և ձկնորսութեան, քանի որ դա ամենագեղեցիկ զւարճութիւններէ մին է։ Ըստ որում քրդերը ձկնորսութեան վրայ կընայէին լոկ որպէս զւարճութեան միջոցի։

Մեծ քանակութեամբ ձուկ որսալ և նիւթապէս շահւել՝ այդ քրդու մտքէն էլ չ՚անցնիր, սպառող չլինելու պատճառաւ։ Քիւրդը կ՚որսայ այնքան, որքան կըբաւականանայ իրա ընտանիքին մի կամ մի քանի օրւան։ Բայց մենք նայենք որսալու կերպերին։ Ահա.

ա. Գետը կտրել, այդպէս կըկոչւի ձըկնորսութեան այն ճիւղը, որ գետի լայնութեան կէսը կամ մի մասը ծանծաղուտ տեղերում, քարերով կըպատեն մի

քէչ էլ հոսանքին դէմ գնալով։ Ասյա բաւ-ւական վերերէն գետի կամ գետակի ջուր-քը կըզգարձնեն դէպի այն կողմը, ուր պատ-քաշած չէ, որով պատած կողմը ջուր չի վազեր և մէջի եղածն ալ պատի փոքր ծակոտիներէն կը քամուի ու ձկները կը-թողնէ արհեստական ցամաքում։

բ. Մաշալլայով որս. դու մի ասեր, որ գիշեր ժամանակ լոյսը կըգրաւէ պա-ղարքուն ձկներին էլ, այդ պատճառով անոր քրդերը մի անազին խուրձ դիւրա-վառ փայտ (մարխ, որթլող, կւենիի ճիւղ են), վրան անպէտք լաթ փաթաթելով ու ձիթոտելով կըշինեն մեծ մաշալլան (ջահ) և կըտանեն նրան գետափ։ Քրդե-րէն մի քանիսը ձեռքերին ունին՝ նիզակի նման՝ եղէգի ծայրին անցկացրած երկժա-նի երկաթ խշտիկ, իսկ մի ուրիշը կը-վառէ ձեռքի մաշալլան ու գետեզրէն կը քալէ հոսանքն ի վեր։ Զ'պէտք է մոռա-նալ, որ մութ գիշեր է։ Ձկները տեսնե-լով մաշալլայի շլացուցիչ լոյսը՝ կըմօտե-

նան ափին, ուր խշտիկաւորները արթնութեամբ կը հսկեն ու մէն մի մօտեցող խոշոր ձկան կողէն ծակելով կը նետեն ցամաք։

գ. Թունաւորումն. ձկնդեղ (պալուղ օթի) կոչուող սխտորի մեծութեան դեղահատերէն մի քանի հատ մոխրի նման մանրելով՝ կը շաղեն ալիւրի հետ, խմոր կը շինեն։ Այդ բաղադրութենէն կաղնի մեծութեամբ գնդիկներ շինելով՝ մէկիկ-մէկիկ կը նետեն գետին մէջ. մինչ այդ՝ մի քանի քրդեր գետի ընթացքի հետ կը վազեն և դիւրութեամբ, խշտիկով կամ ուղղակի ձեռքով, կ՚որսան՝ քիչ վերև թափւած դեղահատերէն ուտելով գինովցած կամ թունաւորուած ձկներին, որոնցմէ ոմանք ոչ միայն ափերին կը մօտենան կիսամեռ վիճակում, այլև շատերը ինքզինքնին ուղղակի ցամաք կը նետեն։ Այս կերպ որսացուած ձկներին էլ կուտեն անխտիր։

դ. Լասթերով. լասթը կամ քէլէկը պատրաստ է. Նրա վրայ կը նստեն մի քա-

նի քըղեր, որոնցմէ երկուսը բռնած են Դայնադիր ուռկանի երկու ծայրերը, ու կըզնայ լասթը գետի հոսանքին հետ։ Ուր որ վարպետ ձկնորսը կըկարծէ թէ ձկներ կան, այդտեղ լասթը երկուսի կըբաժանւի և երկսի մէջ կըգոյանայ բաւական լայնկէկ մի տարածութիւն, ուր կ'իջեցնեն ուռկանը։ Մի քանի րոպէէն լասթամասերն հետզհետէ կըմօտենան, որի ընթացքում ուռկանակալներն (սաթմանճի) էլ կըհաւաքեն ուռկանը և ի վերջոյ կ'առնեն միացած լասթին վրայ, լիքը ձկներով։

ե. Թանտուրլամա (thandourlama). Ձըմեռն է, գետի երեսը սառած և մակերեւոյթը ծածկած է սառոյցի հաստ շերտով։ Ուր որ կըկարծուի թէ ձուկ կայ՝ վարպետը կըհրամայէ ընկերներին ծակել սառոյցը թոնիրի ձևով։ Այդ գործողութեան միջոցին մի քանի ուրիշ քըղեր՝ փայտերով ու կացիններով կըթխկթըխկացնեն ծակուած տեղի շրջակայքը՝ ձըկներին մէջտեղումը կենդրոնացնելու նպա-

տակով։ Վարպետը զգուշութեամբ կ՚իջեցնէ սաթման՝ (ուռկանը) ծովին. Նորա և մի քանի րոպէ ուռկանի ցանցերը ցընցոտելէ յետոյ՝ կըքաշէ դուրս ձկներով բեռնաւորուած ուռկանը։

Երբեմն սառոյցի այն շերտը, որի վըրայ կանգնած են մի քանի տասնեակ մարդիկ, պոկուելով հաստատապած մայր-սառոյցէն՝ իր հետ տարել ու խեղդել է մարդկանց բազմութիւններ։

դ. Մեծ կէտոցը կամ սափէթը քիւրդը կըդնէ գետի հոսանքին դէմ ու կըքաշէ շուրջը որ ջուրը չիտանի։ Մի կամ երկուօր յետոյ կուգայ քիւրդը և զգուշութեամբ ու մեղմիկմեղմիկ կըվերցնէ կէտոցը ձկներով մէկտեղ։

ե. Երբեմն էլ ծերունի քիւրդը, ձանձրոյթը փարատելու համար, կ՚առնէ կարթը՝ երկար չուանի ծայրին անցկացրած և կ՚երթայ մերձակայ գետը ձուկ որսալու։

Է.

# ԶԳԵՍՏ ԵՒ ԶԱՐԴ.

## 1. Քիւրդ տղամարդու հագուստը.

Քրդական բազմազան ցեղերը ունեն զգեստների եւ բազմազան տեսակներ, այնպէս որ՝ բոլոր քրդերին յատուկ մի տարազ հագուստ թէ կարելի լինի ցոյց տալ։ Բայց կարելի է մեծամասնութեան մօտ հանդիպել հետեւեալ հագուստներին։

Ա. Կտաւից երկար ու լայն մի շապիկ, որի թեզանիքները կախւածին մինչեւ քրդու սրունքները կամ թեւերը՝ որպէս կ'իջնեն գետնի մնուքը, այնքան կարգասնանում աղբ- պիտով քրդու շապկի թեւերը կերպոյացնեն

մի մեծ եռանկիւնի ու դեռ մի մէթրաչափ և աւելի կըկախուին ծեռքերէն ցած. քիւրդը իրար կցելով (հանգուցելով) շալկի թևերի ծայրերը՝ գոյացած օղակը կ՚անցունէ ճիտը։ Շապիկը կըպատրաստեն ճերմակ կտաւէ, որ կըգործեն տանկահայերը և որին քրդերը կըկոչեն «ճավ» (djav) կամ «ճէօ» (djeu)։

II. Նոյն կտորէն, կամ բրդէ և կամ վերջապէս մազեղէն կտորէ, կըպատրաստուի քրդու լայն շալվարը, որ կըփոխարինէ վարտիքին ու անդրավարտիքին։

III. Սախ (sakh-սռնապան), որ կըգործեն բրդէ։

IV. Գուռըգը (courec) մեր գուլպան է։

V. Գուռըգի վրայ էլ, կօշիկի տեղ, կըհագնին տըեխ (չարօխ)։

VI. Շապկի և շալվարի վերին մասին վրայ կըփաթաթէ քիւրդը զանազան նիւթերէ պատրաստուած գօտի՛ն, որ կըբոլորէ քրդու մէջքը մի քանի անգամ, ու-

նենալով 5—10 մէթրաչափ երկարու-
թիւն։

VII. Որպէս բաճկոն կամ որպէս վե-
րարկու քրդերը կըհագնին՝ ամառը միլ-
թան (miltan) կամ սալթա (salta) և կամ
չէքպան (tcgéquban), իսկ ձմեռը՝ շաբըղ
(chapec) կամ աբա (ава-аба)։—

ա. Սալթան կամ միլթանը (մինթան?)
իր ձևով շատ նման է մեր բաճկոնակին
(жилетка), սակայն կ'ունենան թևեր և
առջևի փեշերը զուրկ են որևէ օղակ-կո-
ճակէ։ Սալթայի կտորն է պարզ կտաւ
կամ չուխայ։ Նոյն ձևն ունի՝

բ. Չէքպանը, բայց թևերին ներքևը ճեղ-
քուած է և քամու առջև կըտտատանի օդին
մէջ։ Չէքպանի կտորն է՝ թանկագին սա-
ւի, ցփսի, փաստն են։ Հարուստ քրդերն
իրենց չէքպանի կուրծքը, օձիքը և թև-
քերի ու փեշերի եզրերը ոսկեթել կ'ասեղ-
նագործեն, զանազան ծաղիկներ, եզրա-
զարդեր։

գ. Շաբըղը իւր ձևով յար և նման է

ձեր պիճակներին (биджакъ), սակայն Թե-ւերը կըլլինին կարճ, մինչև արմունկը։ Ճա-բըգի նիւԹը մազեղէն է կամ բրդեղէն, որպիսի նիւԹէ կըպատրաստուի նաև

դ. Աւպան, որ իւր ձևով նման է կով-կասում գործածական խափնչիներին։

VIII. Սպիտակ Թաղիքէ գլխարկը (քէչէ քիւլլահ) սովորաբար կըլլինի սրա-ծայր և քչերը միայն՝ կոր-Թասակաձև։ Քիւլլահը բրդու գլխին կիսով չափ ծա-ծկուած է մի քանի տասնեակ խազմանե-րով, շալերով, Թաշկինակներով, Թիւ-լերով։ Քիւրդ ազամարդը մեծ հաճոյքով կըզոհէ օրական 1—2 ժամ, զարդարելու համար իւր քիւլլահը։ Թէև մեզ նման մահկանացուների համար անտանելի է քիւլլահի երբեմն մինչև 10—15 ֆունտ ծանրուԹիւնը, բայց քիւրդը սովոր է դը-րան. առանց քիւլլահի նա «կըկարծէ Թէ գլուխը վրան չէ»։

Կան հարուստ քրդեր, ցեղապետներ,

պէկզատէներն, որոնք կը հագնուին իրենց դրացի տաճկաց, պարսից և հայոց նման։

2. Քրդուհու հագուստը.

I. Իր շապկին համար քրդուհին կը-գործածէ՝ կամ սպիտակ կտաւ (ճավէ սըբի-djavè sepi), կամ կարմիր կտաւ (պիթ-լիզ-bitlis) և կամ տպածոյ կերպաս (չիթ, պասմա)։ Շապիկը կ'իջնի մինչև քրդուհու-սրունքները. կուրծքը բաց է, երկու կող-քերէն էլ ունի դրօշակներ, իսկ թևերը՝ տղամարդոցին նման։

II. Նոյն կտորներէն կըպատրաստուի և շապկընկերը, որ ունի լայն ձև ու խոն-ճէղարձ (ուշգուրլուխ)։

III. Դրանց վրայէն կըհագնին երկար պարեգօտ (էնթէրի, զըպուն), որ կ'իջ-նի մինչև ոտքերի երեսը։ Պարեգօտն էլ ունի եռատտուտն դրօշակներ։

IV, Պարեգօտի վրայէն կապած է տէ-կիմի (բոլորչի) գօտին, որի մի ծայրը

քրդուհու ետևէն կըկախուի եռանկիւնաձև։

V. Քրդուհին գլխին կըծածկէ կամ լաչակ և կամ թաճ։ Վերջինս քոլոզի նման է մի փոքր, որ կըգործեն իրենք բամբկի թելէ։ Թաճի վրայ կ'անցունեն գոյնզգոյն փնջիկ (փիւսկիւլ)։

3. Զարդեր և գեղեցկացուցիչ միջոցներ.

I. Ամենէն առաջ աչքի կիյնայ քիւրդ տղամարդու քիւլլահը, որի վրայ կըփաթաթէ նա, ինչպէս վերև նկատեցի, բաղմաթիւ, մինչև անգամ 100-ի չափ գոյնըզգոյն փաթեթներ, որոնց մէջ կըհանդիպինք նոյն իսկ երեսսրբիչներին։ Փաթեթներին մէջ դուք կըհանդիպիք հետեւեալ գոյներին.—բաց կարմիր (ալ), բաց կանաչ (կեօք րէնկ), բաց կապոյտ (մաւի), շագանակագոյն (խահւէ րէնկ), ծիրանեգոյն (սառի), սև (ռէշ), սպիտակ (սըբի), բաց դեղին (հաք րէնկ), մոխրա-

գոյն (ալպազ կամ պոզ) են են։ Սւեկյացրէք ղրանց վրայ և՛ բազմատեսակ հուլունքները, նոյնպէս գոյնզգոյն, որ քըրդուհին կըկարէ իւր տղամարդու քիւլլահի փաթեթների շուրջը․ այդ հուլունքները քրդու գլխի չորս կողմէն օլոլալով ու փայլփլելով կըկախուեն նրա ճակատին ու ծոծրակին վրայ։ Որքան շատ լինեն քիւլլահի փաթեթները և որքան շատ խայտաճամուկ գոյներով, այնքան պատուով կըհամարուի գլխարկը։

II. Քիւրդ տղամարդիկներէն ոմանք իրենց ձախ ականջին վրայ կըկրեն ոսկէ, արծաթէ, պղնձէ և կամ զանազան քարերէ գինդեր (օղեր)։ Քրդուհին մեծ ջերմեռանդութեամբ «կը օղաւորէ» իւր անդրանիկ որդուն, երբ երկար տարիներ անզաւակ մնալէ յետոյ վերջապէս բաղդ կ՚ունենայ ծնելու մանչ զաւակ։ Գինդերը կըպահպանեն երեխաներին չար նազարէ։

III. Քրդու կուրծքը զարդարուած է զա-

նազան կոճակներով ու ղայթաններով (ժապաւէն), որոնք կըզըրաւեն նրա շապկի ու սալթայի առջևի եզրերը։ Սալթայի 2 կրծքերէն բացած ճեղքերում (գրպան) զետեղուած են այն մի քանի քէսէները (քսակ), որոնց մէջ կըդնէ քիւրդը հրահան-կայծքար-աբէթ, դրամ, զմելին ևն ևն։ Ինչպէս քէսէները, այդպէս և նրանց կապերը զարդարուած են զանազան հուլունքներով։ Իսկ քրդու աջ կամ ձախ կողքէն կախուած թիւթիւն քէսէսին (ծըխախոտի քսակը) իր վրայ կըկրէ քրրդուհու ձեռքի բոլոր հիւնարը։ Այդպիսի քըսակների վրայ զանազան թելերով (յաճախ մետաքսէ), խայտաճամուկ գոյներով, քրրդուհին ասեղնագործած կըլլինի զանազան ծաղիկների նկարներ, թռչուններ, ձի և ձիաւոր, ոճրագործն իր դերում, որսորդական կեանքէն, բնութեան տեսարաններ ևն ևն։

IV. Չէնքակալը (սիլահլուղ) նոյնպէս յաճախ զարդարուած կըլլինի ոսկեղէն,

արծթեղէն, պղնձեղէն ու երկաթեղէն զարդերով, որպէս և փոքրիկ խըխունջ-ների պատեանով (պոլոճիկ—bolodjig)։ Այնուայլ պատուհարներէ պահպանող ե-ռանկիւնի «թղթիկները», «թալիսման-ները», «կապոյտ քարէ կոճակները» են նոյնպէս կրծքէն կախուած և միացած են պէնքակալի մասնիկներին։

V. Ձալվարի ստորին եզրերն ու կող-քերը ստէպ ասեղնագործած են ոսկեթել կամ արծաթաթել (սրմէ, սիմ) բանուածք։

VI. Սախի վրայ էլ պակաս նախշեր չ'կան։

VII. Գուլպայի վիզը և կապը յաճախ հիւսած կըլինի գոյնզգոյն աբրէշումէ, իսկ կապերի ծայրերը՝ փնչիկներով։

VIII. Նոյն իսկ տրեխների ծոպերը քիւրդը մի առանձին վարպետութեամբ կըկապէ՝ ոտքի երեսին, որպէս զարդ, ա-ղիւսակներ գոյացնելով։—Ջէնքերի զար-դերի մասին միւս գլխում։

IX. Քրդուհին էլ ունի իրա սիւսն ու

սալդանաթը (süs-saltanat-զարդ ու զար-
դարանք), որոնցմէ պէտք է յիշեմ առաչ
նրա գլխի թասակը կամ ֆէսը (coff-քօֆ),
որ հարուստներինը ծածկուած է ոսկեղէն
ու արծաթեղէն դրամներով, երբեմն էլ
ադամանդներով, իսկ աղքատներինը՝ հա-
սարակ մետաղէ դրամներով։ Դրանցմէ
ջոկ կան և առանձին արծաթեայ գըլ-
խազարդեր, որոնք հմուտ հայ ոսկերիչ-
ների ձեռքի գործերն են։

X. Գզնձէ կամ արծթէ վարսակալների (սաչ պաղի) հարիւր տեսակը կայ, որոնք քրդուհու կռնակի շքեղ զարդը կըկազմեն և այնպէ՞ս վայելուչ կերպով սազ կուգան նրա առատ, սև-սաթի գոյնով, մետաքսանման, երկար վարսերին ու կ՚իջնին մինչև կրունկները։

XI. Հապա բազմատեսակ մանեակնե՞րը (կերտանլըխ), որքա՜ն շքեղ են ու իսկապէս գեղեցիկ. Ի՞նչ ասես հայ ոսկերիչներին, որ իրենց շինած բռնտիկ կըրծկալներով, հրաշագեղ մանեակներով, եռան-

կիւնի «Թղթիկներով», սիրով «խոցուած սրտիկներով», մարդու և կենդանեաց «գլխիկներով», Ամուռի շնորհիւ իրար հասած «ձեռնիկներով» (pardon), արտասւաթոր «աչքունկներով», աստեղակիր կիսալուսնով, վարդագորով «պիւլպիւլներով» և... ես ի՞նչ գիտեմ էլ, հազար տեսակ այլ զարդերով հնարաւորութիւն կուտան քրդուհուն զարդարելու իրա՝ այնքան արագ ուռչող, զարգացող, ջուխտակ նաներ պտրունակող, տրոփուն կրծքերը, որով նազելի քրդուհին քու սիրտը կըզգերէ,՝ հոգիդ կըքաշէ...

XII. Քրդուհու թևերն զուրկ չեն զարդարանքէ․ արծաթեղէն ապարանջանները, հուլունքների շարքերը, սատափ է (սէտէֆ), բուստէ (մէռճան) և բիւրեղէ (պիլլոր) բազմապիսի բազկալարները՝ կը շխկշխկան քրդուհու թևին վրայ և հարիւր տեսակ փոքր ու խոշոր մատանիների հետ կըլլրացնեն ձեռքի զարդը։

XIII. Օղեր, քանի՞ տեսակ կամենաք—

ոսկիէ, արծթէ, պղնձէ, ականակուռ, հասարակ քարէ և մինչև անգամ սև երկթէ շինուած։ Դրանք ականջների համար։ Ամենանշանաւոր գեղեցկուհիները օղերով կըզարդարեն և՛ իրենց քիթը, որը կըլինի առհասարակ փոքր բայց թանկագին և կըկոչուի խըզմէ։

XIV. Մոռացայ իրա տեղին յիշելու պարզ կրծկալները, որոնք կըպատրաստուին կամ տպածոյ կերպասէ և կամ մանուսայէ, կան և մետաքսէ, որպէս և կապոյտ ներկած կտաւէ (վերջնի վրայ մեղրամոմով զանազան զարդեր ու նախշեր կան բանուած)։ Սրանք բոլորը երկու տեսակ են. մին կրծածկէ քրդուհու միայն կուրծքը մինչև գոտկատեղ, միւսը երկար «գոգնոցն» է, որ քրդուհու առջև մինչև ոտքերի երեսը կըհասնի։

XV. Պարեգօտների քղանցքները, ստորին ծայրերը, թևքերի բերանը, օձիքը, երբեմն և ուսերին վրայ քրդու-

հին կընախչէ գոյնզգոյն թելերով ու ե-
րիզներով։

XVI. Դեղին կամ կարմիր խոնջերով ճիզմէները իրենց փնչիկներով քրդուհու հագուստի և զարդերի լրացուցիչ մասերը կ՚կազմեն։

XVII. Քրդուհին որպէս գեղեցկացուցիչ միջոց կըգործածէ՝ սնգոյր—երեսը ներկելու համար, զարիր (ծարիր, սիւր-մէ)—յօնքն ու արտեւանունքները գեղեցկացնելու և հինա—ձեռքի մատերն ու դիմագիծը և երբեմն էլ մազերը կարմրացնելու համար։

## Ը.

## ԶԷՆՔԵՐ. ԱՌԱՍՊԵԼԱԿԱՆ ԶԷՆՔԵՐ ԵՒ ՆՐԱՆՑ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ.

### 1. Ընդհանուր տեսութիւն.

Քիւրդը Փոքր-Ասիայի ամենաարիւնռուշտ ժողովուրդն է և շարունակ գործ ունի արիւնի հետ։ Ամենափոքրիկ անբաւականութիւնն հերիք է առիթ տալու քրդուն, ոչ զէնքի օգնութեան դիմէ։ Մարդուն իր կեանքէն զրկելն այնքան սովորական, անմեղ ու աննշան բան է քրդուն համար, որ նա մարդ սպանելիս շատ անգամ ցոյց չի տար վրդովմունքի առանձին նշաններ իսկ։ Զայրացած րոպէներին, քըր-

դու մէջ կարելի է բոլորովին մեռած համարել և՛ խիղճ, և՛ մարդասիրական զգացմունքներ։ Քիչ չէ պատահել, որ 2 հարազատ եղբայր-քրդեր մի անարժէք բանի համար յօշոտել են միմեանց։ Իսկ օտարազգիների կեանքը, հօ, քրդու աչքում մի սոխ էլ չ'արժէ։ Մարդասպանութիւնն ու արիւնահեղութիւնը քրդու ամենաբարձր առաքինութիւններն են։

Վրէժխնդրութեան կողմանէ էլ քըրդերը ամենաթունդ ժողովուրդն են Փոքր-Ասիայում. ո՞ւմ յայտնի չեն քրդական կեանքէն առնուած հազար ու մի պատմուածքները, որոնց մէջ արևի նման կ'արտացոլեն քրդու վրէժխնդիր հոգին և ասպետական առանձնայատկութիւնները։ Արիւնին արիւնով պատասխանելու սկըզբունքը խոր արմատներ է գցած քրդերի մէջ և դարերէ հետէ սրբագործուած սովորութիւնների ու կանոնների կարգն անցած։ Յաճախ տնաքանդ վրէժխնդրութիւնը կ'ստանայ քրոնիկական գոյն և

տեղի կուտայ ժառանգականութեան, տեւելով որդոց որդի, ծնընդէ սերունդ։

Այդպիսի նկարագրի տէր մի ժողովուրդ, հասկանալի է, որ կունենայ և ռազմական ճաշակ և ընդունակութիւն զէնքի գործածութեան մէջ։

Զէնքի նշանակութեան մասին բազմաթիւ աւանդութիւններ կան քրդերի մէջ, որոնցմէ մին կ՚ասէ. «Հասան սարսափելի կացութեան մէջ էր. զէնք չունէր. ի՞նչ անէ խեղճը... Նա իրա հարազատ 2 որդիքը սիրայօժար տւեց Ազիզին և առաւ նրա երկփող ատրճանակը»։

Զէնքը քրդու ամենամտերիմ, անզուգական և անբաժան ընկերն է։ Առանց զէնքի քիւրդը օր չունի և այդ պատճառով էլ դուք միշտ կըտեսնէք նրան ոտքէ գլուխ սպառազինուած։ Նոյն իսկ գիշերը, քնանալիս, քրդու վրայէն զէնքն անպակաս է։ Ամենաաղքատ, մուրացկան, պարտքի տակ ճնշուած քիւրդն անգամ ունի իրա անհրաժեշտ զէնքերը, որոնց իր աչ-

քի լոյսէն էլ լաւ կըխնամէ ու կըսիրէ, զաւակներէն էր։

Յաճախ զէնքն է, որ կըկերակրէ ամբողջ ցեղեր։

Քրդական բանաւոր եղերերգութիւններէն մի քանիսին մէջ զէնքը կոչուած է «ազատող, կենսատու, լոյս, բաղդի դուռ, հոգու պաշտպան, կերակրող, պատուհասող, արդար դատաւոր, արդար բաժանարար, խիզախ ընկեր, երկու աշխարհի սահմանագլուխ ևն ևն։

Քրդերը մինչև անցեալ դարի վերջերը անծանօթ էին կատարելագործուած զէնքերին ու նրանց գործածութեանը, բայց շնորհիւ Օսմանեան պետութեան, վերջին 2—3 տասնամեակներում, թափած ճիգերին՝ զինել քրդական ամենահաւատարիմ ցեղերէն ոմանց ընդդէմ քրիստոնեայ հպատակների,—շնորհիւ դրան մի քանի քիւրդ ցեղեր իրենց սիրած զէնքերի շարքերում ընդունեցին և՝ մի քանի կատարելագործուած զէնքեր։ Նոյն զէնքերին դի-

մէլու սովորեցին քրդերին և՛ յաճախակի հայդուկային ապստամբութիւններն ու արշաւանքները Թիւրքիայում, որոնց ժամանակ իրա պարտիզանական զէնքերով անզօր կ'զգար իրեն քիւրդը ֆէտայիների գնդակին առաջ:

Զ'նայած այդ ամենին՝ կատարելագործուած զէնքերի Թիւր քրդերի մօտ սահմանափակ է: Ես ստորև մանրամասնօրէն պիտի յիշեմ քրդերի մէջ գործածական բոլոր զէնքերը իրենց նկարագրութիւններով. այստեղ կըմնայ ասել երկու խօսք առասպելական զէնքերի մասին:

Գուցէ բովանդակ Տաճկաստանում և ոչ մի ժողովուրդ այնքան նախապաշարուած չէ և այնքան մեծ հաւատք չի ընծայեր առասպելներին, որքան քրդերը: Պատմեցէք քրդու մօտ ինչպիսի մըտացածին առասպել և կամենաք՝ քիւրդը բոլորը կընդունէ հալած իւղի տեղ:

«Անկարելի բան չ'կայ աշխարհումս», այդ առածը այնպիսի խոր արմատներ է

գցել քիւրդ ցեղերի (բոլորի) մէջ, որ խոկալէս անկարելին կարելի կըդառնայ քրդու աչքում երբ դուք վկայէք, որ «հնումը եղել է այդ»։

Առասպելական բազմաթիւ զէնքերի մասին հազար ու մի աւանդութիւններ կան քրդերի մէջ. ափսոս որ մէկ կողմէն կըվախնամ ստուարացնել գործս և շատերն էլ վրիպած լինելով յիշողութենէս, այդ կրկին պատճառներով անկարող պիտի լինիմ բերել շատ օրինակներ. սակայն կը դնեմ մէկ-երկու նմուշներ, որոնք հարեւանցի գաղափար կարող են տալ ընթերցողին քրդերի հաւատալիքների մասին դէպի քննելի առարկան։ Նկատել պէտք է, որ սէյիդները երբ կըմտնեն ժողովրդին մէջ սազ ածելու և «աղօթքներ» կարդալու, երգած բանահիւսութիւններէն շատերը կըպտուեն հրաշալի, առասպելական, անհեթեթ զէնքերի շուրջը և ժողովուրդը բերանաբաց կըլսէ նրանց. կըլսէ ու կըհաւատայ, կըհաւատայ ու որ-

դոց որդի կըպատմէ իր լսածը հեքեաթի և այլ ձևերով։

Ձմեռնային երկար գիշերները յաճախ կըլուսանան՝ դեռ չի վերջացած «ալեւոր աքէսրբիի» պատմած հրաշալի առասպելները, որոնք կըկլանեն թազմաթիւ հետաքրքիր ունկնդիրներէն։

Մեր ժողովրդին ծանօթ առասպելախառն «Վարք Սրբոցները», «Երկնքի ճամբաները» են գրքերը բոլորովին տարբեր բնաւորութիւն կըկրեն և դրանք չեն ներշընչեր ժողովրդի մէջ այն ցանկալի ինքնապաշտպանութեան և ասպետականութեան հոգին, ինչ որ քրդական հրաշալի առասպելները, որոնք միշտ կըպտտեն մեր աշխարհի, զէնքերի, թշնամիների, արենակցականութեան ևայլնի շուրջը։ Արժէ լուրջ ուշադրութիւն դարձնել այդ կէտի վրայ և հաւատարմութեամբ գրի առնել այդ կարգի բոլոր ժողովրդական առասպելները, որոնք երբեմն շատ թաքուն իրողութիւններ կըպարզեն՝ այդ ժո-

ղովրղի անցեալի, պատմութեան, ծագման եւայլնի վերաբերութեամբ։

2. Սովորական զէնքեր.

I. Ճէշխան թֆընկյ (chéchkhan tfenc). շէշխան կրնշանակէ վեցանկիւնանի կամ վեցտնանի եւ այդպէս կոչւելու պատճառն այն է, որ այդ հրացանների խողովակի բերանը վեցանկիւնանի է (շէշ=վեց, խան=տուն)։

Շէշխան հրացանի առաւելութիւնը կրկայանայ նրանում, որ նրա խողովակի մէջ խազխզումները միւս հրացաններէն աւելի շրջաններ կըգործեն։ Շէշխանը քըրդերի ամենասիրելի հրացաններէ մին է։ Քիւրդ ցեղերէն ոմանք նրա անունը կըհնչեն շէյիշխանա։

Շէշխանների լոկ խողովակի միջին երկարութիւնն է $1^1/_2$—2 արշին։ Շէշխանը կ՚արժակւի՝ բնի վրայ ամրացած զայլախազի ու կայծահանի միմեանց ընդհար-

ւելին։ Շէշխանի խողովակին վրայ, ար-ծաթաջուր կամ ոսկէջուր, զարդարուած կըլլին՝ զանազան նախշերով ու գծերով։ Շէշխան հրացանի վրայ շատ գովասանական լօլօներ կան, որոնց մէջ շէշխանը կոչուած է. «ցեղի պահապան, կեանքի փոխանորդ (անձնափոխանորդ), խենթերին խելքի բերող, մարդկանց ուսուցիչ, թռչունն երկնքէն վար բերող, ապրուստի դուռ ևն ևն։

Միանգամ ընդմիշտ պէտք է յայտնեմ այստեղ, որ քրդական բոլոր հրացաններն ու ատրճանակները գնդակն ու վառօդը առանձին-առանձին կընդունեն իրենց խողովակի բերնէն։

II. **Չաքմաքլի** (tchacmacli) կամ չախմախլի. շէշխանէն աւելի կարճ և խողովակի բերանը կլոր, հասարակ հրացան։ Չաքմաքլին ամենաշատ տարածուած հրացանն է, այնպէս որ յաճախ իմանալու համար, թէ այս կամ այն ցեղի մէջ քա-

նի՛ պատերազմիկներ կան, կը հարցնեն «այն ցեղը քանի՞ չարքաքըլի ունի»։

Չարքաքըլի կընշանակէ հրամանատր (չարքաք=հրաման, լի=ունեցող, ասոր ման.), որովհետև, ինչպէս վերև էլ նըկատեցի, հրամանն է վառօդը բռնկցնող գործիքը.

III. Էզէլի (èsèli), նոյն հրացանն է, ինչ որ չարքաքըլին, այն զանազանութեամբ, սակայն, որ էզէլին կ՚արծակուի քիստոնով (пистонъ). Էզէլիի բունը զուրկ է հրահանէն ու զայլախաղէն, որոնց փոխարէն կը կրէ ստինքը (մէծէ) և պայթուցիչը (խօրօզ)։ Քիստոնը կըհագնի ստինքին վըրայ, երբ վեր քաշած պայթուցիչը բաց կըթողնուի՝ կը ճնշէ ստինքի քիստոնը և կըտրաքեցնէ, որմէն և կ՚արծակուի էզէլին։ Էզէ կընշանակէ քիստոն։

IV. Գարապինա (Carabina). Խողովակը կարճ և բերանը ձագանաձև հրացան։ Գարապինաների բնորոշ տեսակները կան, որ կըկրեն դէմին պղնձէ (արոյր) խողո-

*վակ և չէչխանին չափ յարգանք կըվայե-լեն քրդերի մէջ։ Գարապինա կընշանակէ սևաքուն (ղարա=սև, պինա=քուն, հիմք, չէնք)։*

V. *Սէչմէլի* (sètchmèli), *զանազան մեծութեան և առհասարակ թեթև հրացան, որ յատկացուած է բացառապէս թռչնորսութեան։ Թէև կան սէչմէլիներ, որոնց կարելի է յարմարացնել պատերազմականի էլ։ Իր անունն ստացել է մէջը գործածուող կապարիկներէն (գնդիկ=սէչմէ), որոնցով կ'որսան թռչուններին։*

VI. *Չիֆթէլի* (tchiftèli) *երկփող (չաքմաքլի, էզէլի են)։*

VII. *Բըշտօֆ* (pechtof) *կամ տըպանչա* (debantchä). *վերոյիշեալ բոլոր հրացանների կարճ ու փոքր տեսակները (ատրճանակ) կան, յարմար գօտիի մէջ խրելու։ Դրանք կըպահպանեն հրացանների անունները, սակայն աւելացնելով բըշտօֆ կամ տըպանչա բառերը։ Քրդերի մէջ շըջահարի* (revolver-револьверъ) *գործածութիւնն հազ-*

ւադէպ է. բայց բամփուշտամծիգ մարդինները, այնալիները, իյնէլիները, նոյնիսկ ռուսական նոր սիստեմի հինգհարւածեան զինւորական հրացանները արդէն կ՚երևին քրդերի մէջ։ Վերջին տեսակէն Թիւրքիա կըմտցնեն կովկասցի տաճիկները ու քրդերը տարբեկան բաւական մեծ քանակութեամբ և քիւրդը ուրախութեամբ կըվճարէ նրանց հատին մինչև 100 րուբլի։ Պէռտաններն համարեա քրդերէն շատերը կըգործածեն։

Այժմ յիշենք հետևեալ պաղ զէնքերը.—

VIII. Շըմշէր (chemchér) կամ շիր (chir), սուրն է այդ, որի շատ տեսակներին կըհանդիպենք քրդերի մօտ. յիշենք մի քանիսը.—ա. կեռ շեղբով և օղակաւոր երախակալով. բ. նոյնպէս կոր շեղբով բայց խաչաձև երախակալով. գ. ուղղաձիգ շեղբով ու նոյնպիսի երախակալով. դ. գլանաձև կամ հաւկթաձև գլուխ ունեցող երախակալով ու սրածայր շեղբով և ուրիշ շատ տեսակներ։ Խիստ յարգի է քըր-

գերի մէջ այն տունը, որի շէնքը (երկաթը) արևի առջև ծիածանի գո-լոր գոյներով մեկին կըփայլի կամ առ-կրտեալ (պուտ-պուտ) և կըկոչուին ճէօ-հէրլի (djeuhérli) կամ շահրէլի (tchahréli)։

IX. Խէնչար (khéntchar), դաշոյնն է, որի մի քանի տեսակները կան. ամենա-շատ տարածուածներն են երկոսայրի կեռ դանակները՝ 1—1½ թզաչափ երկար շեղ-բով։ Զարհուրելի է տեսնել քրդուն մո-լեգնութեամբ խոյանալիս իւր դժբաղդ ոխերմի վրայ, երբ սառնասրտութեամբ իւր թունաւոր դաշոյնը մինչև կոթը կը-մխէ նրա կուրծքը կամ կողքը։

X. Խէնչարի ընտանիքին կըպատկանին և՛ ղամա՛ն ու խաթաղանը։

XI. Ոչ-պակաս սոսկալի է և Նիզակը (մըրզախ, մըզրախ, մըզրաք), որ 3—8 մէթր երկար եղէգի ծայրին ամրացած՝ կ՛սպառնայ հակառակորդի կեանքին՝ 1—2 րոպէում 10 անգամ ծակելով։

XII. Նաչախ, Նաճախ կամ Նաճագ

(nadjac), որ իր ձեւովը շատ նման է լագերի գործածած կրոպի (grobi) կոչւող գործիքին։ Նաճաքի ամենայարգի տեսակըն է մահիկի ձեւ ունեցողը, որի մի հատիկ նպատակայարմար հարուածը բաւական է գետին տապալելու ախոյեանին։ Նաճագի (տէգ?) կոթը երշինեն կարծր փայտէ՝ 1½—2 մէթրաչափ։

XIII. Պէտք է յիշել և շիշերը, որոնք կունենան գնդաձև ծայր, կամ սրածայր ու կլոր, կամ եռանկիւնի ու քառանկիւնի և երբեմն խառնոցանման շեղբեր։ Շիշերը քրդերին նոյն ծառայութիւնը կըմատուցանեն, ինչ որ զինուորներին՝ սուինները։ Քրդերը շիշերին կրկոչեն՝ ճաղ, շիշ, սունկի, տրուն։ Այդ ծահառիթ գործիքներով քիւրդը կրծակէ իր թշնամու կենդանեաց ճիտը, փորը, կողը... միեւնոյն գործին պատրաստ է շուլլելու և՝ կենդանեաց տիրոջ կուրծքը, եթէ դա արժանի է սեպուած մահուան։ Բուն շիշը կունենայ 2—3½ մէթր երկարութիւն, որի

$^{3}/_{4}$ էն աւելին պատեանումն է և հազիւ $^{1}/_{4}$-ը՝ կոթին մէջ։ Կան շիշեր և ձեռնափայտի մէջ անցկացրած։

XIV. Շիշն ունի իրա ձագը, որին կարելի է քրդու ամենավտանգաւոր զէնքն համարել։ Ռազմական գիրկընդխառնումի միջոցին այդ մէջքի շիշ կոչուող սատանան է, որ կըխաղայ իր դժոխային դերը՝ մի րոպէում մահացնելով իր տիրոջ ոսոխրմին։ Քրդերը պէլ-շիշի—մէջքի շիշ—կ՚անուանեն այն պատճառով, որ յարմար է գօտումը պահելու։ Սա օձի ձագ էլ կըկոչուի երբեմն։

XV. Խըռպաճն (kherbadj) էլ բարի պտուղ չէ։ Սա զանազան մետաղաթելերով հիւսած խարազան է։ $1^{1}/_{2}$—3 մէթր երկարութեամբ։ Կան և արջառաջիլեր։ Խըռպաճի 1—2 տեսակները շատ նման են ռուսաց մտրակին, բայց իհարկէ քնութի նիւթէն չէ պատրաստուած։ Առանց յուշաթափման վտանգին ձեզ ենթարկելու չէք կարող 2 րոպէ նայել քիւրդ ցե-

ղապետին, երբ սա բարկանալով այս կամ այն հպատակին վրայ՝ կ'սկսի խռպանի ոսկայլի հարուածներով քաղել անբաղդ ենթակայի հոգին...։ Աւազակ քիւրդը վաճառականին կողոպտելիս՝ այդ գործիքով է, որ կ'ստիպէ նրան յանձնել ամեն ինչ և մինչև անգամ կեանքը։—Այս կամ այն կեավուրի տան վրայ յարձակուելիս կամ գաղտագողի մտնելիս, խռպանն է դարձեալ, որ կըբանայ տանտիրոջ պապանձուած լեզուն և մատնել կուտայ իր գանձի կամ այլ խնդրելի առարկայի տեղը։ Խրապանի օձային գալարումները մահ կընծութէն ոչխարներին, այծերին, շներին... եթէ դրանք ենթարկուած են թէկուզ մի-մի հարուածի, այս կամ այն պատճառով։

XVI. Սդրոբա (stropa)• այդպէս կըկոչուի այն զահրումար գործիքը, որ իր ձեւով բոլորովին նման է բալ պտղին՝ իր կոթով միասին։ Սդրոբան կունենայ հազիւ $1^1/_2$—2 թզաչափ երկարութիւն։ Երևակայեցէք այդ երկարութեան հետ

Ներդաշնակ մի բալ (ВИШНЯ), որ կուտի փոխարէն պարունակէր իրա մէջ 4—5 ֆունտ կապար, իսկ մնացեալ բոլոր մասերը մետաղէ կամ ռանամծէ թելով հիւսած (ինչպէս խիստ կօշտ ու հաստ տուռկան) ագիւրակներով, որ կըշըրջապատեն կապարէ կլոր գունդը և կոթի ծայրումը կըգոյացնեն պուկունքներ՝ ձեռքէ չ'սահելու համար,—և դուք կունենաք սղըրբան։ Այդ զէնքով քիւրդը կըճզմէ իր հակառակորդի գլուխը, կամ—եթէ կամենայ սպանել—կըջարդէ կողերի ոսկորները։ Առհասարակ գաղտնի գործելիս սղըրբան կըտեղաւորեն հագուստին մէջ և վըճռական րոպէին միայն երևան կըհանեն։

XVII. Յիշատակութեան արժանի է և վահանը, որ ամենահին զէնքերէն է և պահպանել է քրդերի մօտ իր պատմական ձեւը։ Քրդերը կըկոչեն՝ խըլխան, խալխան կամ աւելի յաճախ գալգան (calcan)· վահանն ունի կլոր սկաւառակի ձև, շինուած ամենակարծր թաղիքէ և պատած կա-

շիտփ։ Վահանի մի կողմը կոնաձև է և ունի դիմացկուն կաշիէ կամրջակ՝ բռնելու համար։ Դա ներսն է։ Դրսի երեսը, որի կենդրոնը գնդաձև է, ծածկված է պայտի մեխերով, հաստ-հաստ գլխով. այդ մեխերն են որ կըդիմադրեն թշնամու սրի հարուածներին։ Քրդերը բաւական շնորհալի կերպով կըգործածեն վահանը և դիւրաթեքութեամբ շարժելով նրան՝ կըպաշտպանուին ներքևը։ Վահանը քրդու մօտ միակ պաշտպանողական գործիքն է։

Այնքան էլ յարգանք կըվայելէ վահանը քրդու մօտ, որ յայտնի քրդական առածը, թէ՝ «երեք բան չէ կարելի ծախել—կինը, ձին և զէնքը», ստէպ քիւրդը «զէնքը» բառին տեղ կըդնէ «վահանը», և՝ նայելով նրա խաղացած կարևոր դերին՝ արժէ այդ պատուին։

XVIII. Գոպալը կամ աւելի Գոմպալը (Combal) նոյնպէս պէտք է դասել պաղ զէնքերի կարգը։ Գոմպալի ամենասովորական ձևն է՝ 2—2½ արշին երկարու-

թեամբ մի բարձր ու հաստ փայտ, ծայրը գնդաձև և ծածկված հաստագլուխ մեխերով։ Մեզանում գործածական «բիր» բառով կարելի է բնորոշել գոմպալը։ Շատ անգամ մի փոքր ղալմաղալի պատճառով հովիւ քիւրդը կըջարդէ գոմպալով դէմինի գլուխը։

XIX Սափան կամ սըբան (sepan), թէև ոչ ամեն տեղ և շատ քչերը կըգործածեն սըբանը, որ մեզանում կըկոչուի՝ պարս, պարսետ, պարսեթ՝ բայց կարելի է հանդիպել դրան քրդերի մօտ։ Սըբանի ամենայայտնի ձևն է հետևեալը. կաշիէ փոքրիկ թաթի նման մի գոգ, որի երկու ականջներէն ամուր կպցրած են չուաններ։ Քիւրդը սըբան գոգին մէջ կըտեղաւորէ մի հաւկթաչափ կամ աւելի խոշոր քարեր, ապա չուանների ծայրերէն բռնած՝ արագ-արագ կըպտտցնէ օդին մէջ և հուսկ յետոյ բաց կըթողնէ չուաններէ մին. գոգի քարերը տժժալով կըսլանան դէպի նըպատակակէտը։ Պարսաքարը քրդերէն կը-

կոչւի գևըռէ սըբան (kevre sepan) կամ քեռռէի սափան (kerrei sapan)։

XX. Օխ (okh), որպէս պատերազմական գործիք օխը (նետ) արդէն քրդերի մօտ էլ կորցրել է իրա վաղեմի նշանակութիւնը։ Բայց լամուքները (քրդու երեխերք) կըգործածեն նրան նոյն նպատակով ու սլաքի (նիշէն) փոխարէն կըդնեն մախաթանման փայտեր։ Է՛լի քիչ թռչուններ չեն զոհւիր լամուքի օխերով։ Աղեղին կ'ասեն եայ (яй) որով և «նետ աղեղը»—«եայ օխ»։

XXI. Այդ բոլոր զէնքերի հետ կըգործածեն քրդերն հետևեալ առարկաները.

ա. Եղջիւր, որի ծայրը, երբեմն էլ բերանը, զարդարած կըլինի մետաղեայ բանւածքներով և կըծառայէ որպէս պահարան աղզօտի (aghzoti-մանր և դիւրավառ վառօդ)։

բ. Կաշեայ տոպրակներ, որոնց մէջ կըդետեղէ քիւրդը՝ գնդակ, բրչեր, վի-

բանկայ, արեծ, հրահան, կայծքար, թուղթ են։

դ. Էգէյըրխ, նիզակի համաթեամբ և մօտ ³/₄ թզաչափ երկար հաստրակ մետաղէ՝ ասղամանի նման զարծի, որի մէջ կըլեցնէ քեւրդը բիստոն կամ աէչմէ։

դ. Խուդինուղ (khoutidjough), սա մետաղաշէն մի փոքրիկ տուփ է, որ էգէյըրխի ծառայութիւնը կըմատուցանէ։

ե. Ֆըշանքներ (fechanc), թիթեղէ կամ փայտէ շինած դատարկ բամփուշտներ են, որոնք կըպարունակեն մի-մի աթըմ (հրացանի մէջ մի անգամ լեցնելու) վառօդ և գնդակ։

զ. Փըշանքլըխ, կաշիէ շինած և շըքեղօրէն զարդարած բամփուշտաշարքն է, որ կըկրէ իր վրայ 30—60 ֆըշանքներ։

Դրանք և դրանց նման դեռ ուրիշ շատ առարկաներ կըզարդարեն սպառազինուած քրդու կուրծքն ու կողերը։ Մէն մի խոշոր զարդարուած է գոյնզգոյն և մանր ու խոշոր հուլունքներով, գոյնզգոյն սեկէ

և մեռաղէ զարդարանքներով, որոնք բըրդու քայլելու միջոցին կըհանեն ախորժալուր չըխկչըխկոց՝ ներշնչելով բրդու մէջ անսովոր էներգիա։

Իւրաքանչիւր քիւրդ կըվերցնէ մէկ փութէն աւելի ծանրութեամբ սպառազինութիւն և մի ասեղի չափ բեռ չ՚զգար իր վրայ։

«Զէնքի ծանրութիւնը—ոյժ է կրողին համար»։ (Առած)։

3. Առասպելական զէնքեր.

I. Զիւլֆիխար (zülfikhar-зюлфихаръ) կամ Զըլֆըխար. այդպէս կըկոչուին այն հրաշագործ սրերը, որոնցով քրդական դիւցազներգութեանց և հեքեաթների հերոսները մի րոպէում հազարաւոր հակառակորդներ կը կոտորէին։ «...Երկնքի երեսն երևցող փայլակը եօթներորդ ցոլքն է Հսկայ Օշինի զիւլֆիխարին, որ իր անպարտելի տիրոջ մահէն յետոյ սլացաւ երկինք, մինչև երկնքի եօթներորդ փէրտէն (յարկ) ու

այնանեղէն երբեմն կ'արձակէ իր շլացուցիչ, աչք խտտեցնող ցոլքը, որի եօթնեբորդ ցոլքը միայն մեզ կերևնայ...»։ Միևնոյն զիւլֆիխարի ընտանիքէն էր յայտնի «Շահ Իսմայիլ» հեքեաթի հերոսի հրաշագործ սուրը, որը, սակայն, Շահ Իսմայիլի մահէն յետոյ փազլօ տիւնիասիին (Բղնուննեացծով?) մէջ թաղուեցաւ և էլ չերևցաւ մարդկանց։

Հրաշագործ զիւլֆիխարները բազմութիւ են, բայց դրանցմէ ամենազօրեղը այն զիւլֆիխարն էր, որ գործածեց «Իլիմտար Օխ»-ի հեքեաթին հերոս Ճաքերտը։

— Օ՜, Տաքերտի զիւլֆիխա՜րը, ի՞նչ կասէք դուք, նա մի ժամում աշխարհ տակն ու վրայ կանէր, եթէ իրա տիրոջ հօրը կեանքին չ'խնայէր... բերէք 100 հազար մարդ և Տաքերտի զիւլֆիխարը

մի բոպէում կըչարդէ նրանց այնպէս, որ քէֆդ գայ *)...

II. Ճէմբոլատ (djèmpolad). Հայ է ճէմբոլատին տէրը, բայց գիտէք Հայը ինչպէս տիրացաւ ճէմբոլատին, ահա կըպատմեմ նրա հեքեաթը.

«Ժամանակի տարածութեան մէջ, մազըն ու սառատը յարդի մէջ (եղել է, չէ եղել)...

«Այնքան վախկոտ էր Խազարը, այնքան երկչոտ, որ, Տէ՜ր Աստուած, ինք իր շուքէն էլ կըվախենար։ Այս Խազարը չէր ամըչնար վախկոտ լինելէ, հէնց վախկոտութեան պատճառով էլ նրա գործը միշտ ձախորդ կերթար։ Վախկոտ Խազարը նոյն իսկ իր կնոջ համար մի կտոր հաց չէր կարող ճարել (հայերի կիները չեն աշխատիր, խաթունի պէս տտք տտքի

*) Ինձ իմ Օձի և մի քանի այլ հեքեաթներ կըդնեմ յաջորդ հատորներում, պահպանելով բուն քրդական ոճը։

վրայ կընետեն կընստին ու կսպասեն, որ անպատճառ տղամարդը հաց ճարէ ու բերէ. հայի կիները նազուկ են սովորած), բայց երբ է Աստուած վախկոտին հաց տուել, որ Վախկոտ Խազարին տայ: Վախկոտ Խազարը, չ'նայած դրան, արհեստ էլ ունի, նա չուլֆա է (ջուլհակ, ոստայնանկ), այդ պատճառով էլ ամենքը նրան կրկոչէին Ջուլֆա Խազար:

«Մի անգամ Ջուլֆա Խազարին կինը բարկացաւ իւր երկանը և նրան տնէն վռնտեց: Ջուլֆա Խազարը լալով-աղաչելով ոչինչ չի վաստկեցաւ: Կինը հազիւ կարողացել էր մի կերպ դռնէն դուրս հանել անպիտան Ջուլֆա Խազարին՝ էլ ե՞րբ ներս կ'առնէր, խե՞լ էր որ...»

— «Չէ՛, կասէր կինը, մինչև որ 40 չուվալ (պարկ) ոսկի չբերես՝ քեզ ներս ընդունողը չեմ, ինչ էլ և լինիս:

— «Գոնէ պապենական ճէմբոլասս (ծեռնափայտ, գաւազան) տո՜ւր, որ շընորհէն պաշտպանուիմ, լացաւ Խազարը: «Կի-

նը կատարեց նրա վերջին խնդիրքը. Ճէմբոլատ անունով մի փայտ կար զարկած առաստաղի գերանների արանքը—ով գիտէ՝ քանի հարիւր տարիներէ հետէ, վար առաւ կինը Ճէմբոլատը և տւեց Խազարին։

«Վախկոտ Զուլֆա Խազարն էր, քեզ որ տսեմ, առաւ Ճէմբոլատը, կնոջը «մընաս բարով» ասաց ու հեռացաւ։

«Շատ ու քիչ գնացածը Աստուծուն է այան (յայտնի), մէկ էլ հասաւ Մուրատ չային (Արածանի գետ) ու օրը երեկոյ լինելով՝ վախցաւ առաջ երթալ,—պառկեցաւ Մուրատ չայի վրայ շինուած կամըրջի հնադարեան ամրակուռ կամարներէն մէկին տակ։

« Մեր Վախկոտ Զուլֆա Խազարը շատ վախցաւ, դողաց, սարսռաց, աչքը դուրս ընկաւ, շունչը կռնակէն առաւ, կողէ կող իյնալով հոգին քաշեցաւ, բայց իզուր—քունը չ'տարաւ։ Աչքը փակելու պէս կանէր թէ չէ՝ այնպէս կերևնար,

որ, հա՜-հա՜, վրայ կրհասնին աժդահա դեւեր… եւ կբրանար աչքը, կրդողա՜ր վախէն… Ի՞նչ անէ խեղճը… «Բայց արի տես որ, Վախկոտ Զուլֆա Խազարը կարդալ գրել էլ գիտէ, ասենք ո՞ր հայը խելմտար չէ (գիտնական), որ նա չըլլինի, գիտութի՞ւն կուզէք—հայրն քով վազեցէք, ամենայնետին հայր խելքով ու խելմով (գիտութիւնով) երկնքի աստղերը վար կ'առնէ…

«Մեր Վախկոտ Զուլֆա Խազարը խելքէն էլ պակաս չէր, խելացի լինելուն համար էլ գտաւ հետեւեալ հնարը. ճէմբոլատին վրայ դեւերի լեզւովը գրեց այսպէս.—

«Գուրատա եաթան Զուլֆա Խազար—
Գիր աթանտա վըրգ պին էզար»։

Այսինքն. «Այստեղ պառկողն է ոստայնանկ Խազար,—
Ծզմէ մի զարկով քառասուն հազար»։

«Այս ճեմբռլատը տնկեց գլխավերևն ու ապահով քնեց։

Կես գիշերին, մեկ էլ տեսնես, երկինք-երկիր ղող ելավ.—գու մի ասեր՝ 39 հատ 40 գլխանի դև, սար ու ձոր քանդելով, ճանապարհին հանդիպած խնամօղլիները (աղամորդիք) շունչով ներս ծծելով, հայ-ներն էլ արար-աշխարհք բռնած՝—կուգան դեպի մեր Խաղարը։ «Մինչդեռ մեր Խա-զարին հիչ հոգն էլ չէ, այնպե՞ս կըխռըմ-փացնէ, այնպե՞ս խորունկ քուն կըլինի, որ չես ասեր թէ դա Վախկոտ Խազարն է...

«Դևերէն մին—պարադլուխը—կըտեսնէ ճեմբռլատն ու կասէ իր ընկերներին.— Աղբրտիք, այստեղ մի խնամ օղլի անվախ պառկած է։ Դևերը կըմեկտեղուին ու կը-մոտենան Վախկոտ Խազարին ու կըկար-դան ճեմբռլատի վրայի դևերի լեզվով գըր-ուածը.

Պուրատա եաթան Չուլֆա Խազար—
Գիր աթանտա գըրգ պին էզար։

«Դողը կըպատէ դևերի սիրտը, երբ որ

կըկարդան այդ խօսքերը, թէ Զուլֆա Խազարը մէկ զարնելով քառասուն հազար մարդ կը շրջէ։

«39 հատ 40 գլխանի դևերը գլուխ-գլխի, խելք-խելքի կուտան, միշէվէրէ (խորհուրդ) կանեն,—ի՞նչ անեն, ի՞նչ չանեն և վերջապէս կ'որոշեն իրենց ընկերացնել Զուլֆա Խազարը։

«Անդին սուրբ Սարգիսը (Խըդըր) կուգայ Խազարին երազին մէջ և կասէ նըրան.—«Զուլֆա Խազար, ասկէ վերջը աշխարհիս վրայ ոչ մի բանէ մի վախնար, որովհետև քու ճէմբոլատդ թըլըսիմ առաւ. ինչ որ ուզենաս՝ ճէմբոլատով կարող ես կատարել», կըսէ ու կ'երթայ։

«Մեր Խազարն էր, Աստուծմէն շնորհք առաւ ու վրան էլ այնպէ՜ս ուժ եկաւ, որ այդպէս ուժ ոչ քրդերն ունին, ոչ էլ մի ուրիշ մարդ։ Ու երբոր պարթեցաւ, Խըրսէն (եռանդէն) 7 թիզ վեր թռաւ ու կայնաւ 39 հատ 40-գլխանի դևերին մէջ։ 39 հատ քառասուն գլխանի դևերը

երբ տեսան քաջ Խազարի կարմրած աչքերը՝ խիստ վախցան ու միաբերան ասացին.

— Կրներես, Զուլֆա Խազար աղա, որ քիչ անհանգիստ արինք. բայց մենք եկանք քու մօտ մէկ խնդիրքի համար։ Ամա՜ն, դու գիտես, կատարէ մեր խընդիրքը...

— Ինչ խնդիրք է որ, հարցուց քաջ Խազարը։

— Մենք 40 եղբայր էինք և ունէինք 1 քոյր, որ իր գեղեցկութիւնով կասէ՝ «Արև, մի ծագիր, ես կըլուսաւորեմ ալէմ տիւնեան»... Հիմա էլ մէկ հատ սևերես 40 գլխանի դև եկած՝ զօրով տիրացած է մեր քրոջը և միայն մեր ամենամեծ եղբայրը մնացած է մեր քրոջ մօտ... Մենք կուզենք կռուել ու ազատել մեր քրոջը, բայց կասեն սևերեսը թըլըսմանած թուղթ ունի վրան՝ չենք համարձակիր...

— Է՛, է՛, եղա՛ւ, կա՛րճ կապեցէք, կասէ քաջ Խազարը,— մտքերդ հասկացայ՝

կուզէք ձեզ ընկերանամ ու պատմեմ ձեր քոյրը... Լաւ, կուզամ, կպատմեմ, հոգ մի անէք... Կասէ ու, աչքը սիրիմ այնպէս կտրիճին, ձեռքը կառնէ թըլըսիմ առած ճէմբոլատը և կիջնայ դևերին առջև։ Շատ կերթան, քիչ կերթան, մէկ էլ կըտեսնեն, որ հընգարան հընգար (հազարք հազարաց) սևերես դևեր մեծ սևերես դևին կըծառային։ Մեծ սևերես դևն էր 39 հատ 40 գլխանի դևերի քրոջ հետ ճիմպիշի մէջ է (կըզուարճանայ)։

— Մեկդի՜ կեցէք, տեսնեմ, կըպոռայ քաջ Խազարը... Եա՛, քեզ եմ ապաւինել, սուրբ Սարգիս, ո՞ւր ես, հասի՛ր, ինձ ամօթող չիթողնես... Ու երբոր ճէմբոլատը կըշարժէ օդին մէջ և կըխոյանայ «պըռո՜ռո՜ռո՜» առաջ՝ դէպի սևերես դևերը՝ մի ակնթարթում ջարդ ու փշուր կանէ բոլոր սևերես դևերին, որոնց հետ կապանւի և՛ սև դևերի պարագլուխը—աղջկայ փաղցնողը, և՛ ինքն աղջիկը և վերջինիս ամենամեծ եղբայրը... «39 հատ 40 գըլ-

խանի դեւերը թէեւ շատ շնորհակալ կըլլէին Հերոս Խազարէն՝ իրա քաջութեան համար, բայց շատ էլ արցունք կըթափեն իրենց աննման քրոջ ու մեծ եղբօր համար...

«Հերոս Խազարի սիրտը չ'դիմացաւ 39 հատ 40 գլխանի դեւերի լացուկոծին, եւ նու ծունկ չոքեց ու աղօթք արեց Խըդըրին, որ գոնէ նահատակ աղջկայ հոգին յետ դարձնէ։ Հերոս Խազարի խնդիրքը կատարուեցաւ եւ մեռած աղջիկը սաղացաւ ճէմբոլատին զօրքովն ու Խըդըրի շնորհքովը։

«39 հատ 40 գլխանի դեւերը շատ ուրախացան որ իրենց արեգակնանման քոյրը նորէն ողջացաւ եւ խորհուրդ արին որ 40 օր 40 գիշեր հարսանիք անել եւ իրենց քրոջ սատղը կապել Հերոս Խազարի սատղին հետ — ամուսնացել նրանց։ Բայց Հերոս Խազարը չը համաձայնուեց ու ի՞նչ ասաց, գիտէ՞ք.

— «Ես հայ եմ, ասաց, հայի օրէնքով

2 կին առնել չի լինիր. ես մէկ կին ունիմ, որ մինչև 40 պարկ ոսկի չ'տանիմ ինձ տուն ընդունելու չէ։

«39 հատ 40 գլխանի դևերը անմիջապէս բերին 40 պարկ ճինիվիզի ոսկի (հին հռովմէական?) և հերոս Խազարին փառքով ու պատւով ճամբայ գցեցին...

«Այդ ճէմբոլատը, կասեն, մինչև հիմա կայ մի հայի վանքի մէջ»։ («Ճէմբոլատի հեքեաթէն)»։

III. Կիւրզի (gürzi), այդպէս կրկոչւեն այն հրաշալի գունտերը (երկաթ, արոյր, պղղպատ, կապար են), որոնք կը կրշռեն անթւելի ծանրութիւն և որոնցմով առասպելական հերոսները վերոյգրեալների նման հրաշքներ կըգործեն։ Այդպիսի կիւրզիներէն մին էր, որ գործ կածէր «Շահ Իսմայիլ» հեքեաթի հերոսուհի Արապ-Զօզէնկին։

IV. Ածելի (бритва). հրաշալի պէնքերի շարքին կըպատկանի նաև ածելին։ Մի հէքեաթի մէջ, երբ հերոսը «աղջիկն ա-

ռաւ ծխու գաւաւկը և սկսեց փախչիլ, կէս ճանապարհին նկատեց, որ իր ետևէն ահագին փոշու ամպ կբարձրանայ... Աղջիկը հաւկացուց Պոստանճի օղլիին *), որ դևն է եկողը... Պոստանձի օղլին նետեց իր մօտի ափսոնած ածելին դէպի յետ և անհա արար-աշխարհ սուր-սուր ածելի դարձաւ ու դևի ոտքերը կտրտուեցան...» («Չէրմէի մանկա» հէքեաթէն)։ Կան և ուրիշ տեղեր նոյնպիսի ածելիներ։

V. *Խուտուռ թոխմախ* (khoudourr tokhmakh), որ կընչանակէ «կատաղի՛ր, մո՛ւրճ» կամ «կատաղի մուրճ» և որին կըվերագըրուի մի շարք հրաշագործութիւններ։ «Ջինումաչինայ թագաւորին աղջիկը մինչև որ «խուտուռ թոխմախ»ի ինքնուրոյն հարուածները չ՚կերաւ՝ չի յայտնեց իւր «սիրողի» անունը...»։

---

*) Հէքեաթի գլխաւոր հերոսի անունն այդպէս է։

«Եօթն ակէն» հէքեաթին մէջ էլ գըլխաւոր հերոսը (Թէմպէլը) «խուտուռ, թոխմախըմ, խուտուռ» երբ կասէր՝ հրաշագործ մուրճը կը հալածէր նրա թըշնամիներին, մինչև որ վճարէին իրենց գողացածի փոխարէն, կամ խարդախած առարկան ետ դարձնէին։

VI. Գորիզ (coris)․ աւելորդ չի լինիլ յիշել այստեղ գորիզը, որ մագնիսացրած երկաթն է և որով քրդուհին կ՚ափսոնէ (աֆսոն կանէ) այս կամ այն դժբաղդութեան ենթարկւողին—վախեցողին, «լեղին պատռողին», ջերմահարին են են։ Միևնոյն բառը «Կորիզ» հնչումով յայտնի է Բալուցի հայոց բարբառում և կրնշանակէ ճէօհէրլի կամ չահրէլի (տես «Ճըմշէրի» մեկնութիւնը)։

VII. Չէլիկ չախու, զուտ պողպատէ դանակն է, որով մածունը կրմակարդեն և կաթէն պանիր կրշինեն։

4. Զինագործները.

Տաճկաց-Հայաստանում զինագործութիւնը հայերի ձեռքին է։ Զինագործների քրդերը կ՚անուանեն. «խըլըրճի, Թըֆընքճի, սիլահքեար, պիչախճի» և մեծ յարգանք կըտան նրանց։ Հայ զինագործը քրդու երկրորդական Ալլահն է, որի դըլխով երդում կանէ։ Ուշադրաւ է, որ հայկական կոտորածների ժամանակ շատ տեղերում քրդերը խնայեցին հայ զինագործների կեանքը և ցոյց տուին վերջիններիս ամենազօրեղ պաշտպանութիւն ընդդէմ տաճիկ զօրքերի և Թիւրք խուժանի, «զինագործի բրդը (պատիւը) մեր բրդն է» ասելով։

Իւրաքանչիւր քիւրդ ինքն էլ կարող է քակել և նորէն շարել բոլոր զէնքերը։ Նոյն իսկ քրդուհիները՝ ծանօթ են զինագործական մի քանի տարրական գիտելիքների և ի պահանջել հարկին անձամբ դուրս կուգան ցեղի Թշնամեաց դէմ։

Չինագործներն իրենց տուած ապրանքների փոխարէն կ'առնան քրդերէն՝ իւղ, պանիր, մորթ եւն: Նահապետական թրամփան (trampa)—ապրանքն ապրանքով փոխարինելու սովորութիւնը—մինչեւ այսօր կրպահպանուի քրդերի մէջ: Քիւրդը փող կունենայ կամ մարդկանց կողոպտելով, սպանելով, գողանալով եւն եւ կամ հազարէն մէկ ծախու որեւէ բան քաղաք տանելիս:

---

Թ.

# ՈՒՏԵԼԻՔ ԵՒ ԽՄԵԼԻՔ

## 1. Քրդական կերակրներ.

Քրդու խոհանոցն աղքատ է. նա ոչ ծանօթ է և ոչ էլ կըգործածէ բարդ կերակուրներ։ Ահա քրդական կերակուրները, որ միառմի կընկարագրեմ այստեղ։

I. Գոմա կամ փաթիլա (goma, patila).— Մեզ ծանօթ սալաքարին վրայ կլորակ ձևով թանձր խմորն եփելէ յետոյ՝ կըհանեն նրան կրակամոխրի տակէն, որ լեցրել էին խմորին վրայ՝ սալաքարի երեսին տեղաւորելէ յետոյ։ Թանձր հացի ներքևը, երեսը և կողերը հաստ շերտով

կարմրած են։ Երեսի կեղեւն զգուշութեամբ կը հեռացնեն վրայէն և ապա փխրուն միջուկը ձեռքով լաւ կը փշրեն, որ աւազի նման կը կուտակուի ներքեւի կեղեւին մէջ։ Այդ կեղեւն ստացած է կլոր և խորը սկաւառակի ձև ու ոչ մի տեղէ ոչ մի ճեղքուածք չունի։ Մինչ տղամարդը հացի միջուկը փշրելով է զբաղուած՝ անդին քըրդուհին մեծ տապակով կը հալէ կարագ իւղը ու կը տաքէ։ Այդ իւղն առատօրէն կը լեցնեն փշրած միջուկին վրայ, որ ամբողջովին կը թրջուի և իւղը ըմպելով՝ կը բարձրանայ մինչև ներքեւի կեղեւի պըռկունքները։ Այնուհետև թեւերը կը սոթտեն ու կը մօտենան արդէն պատրաստ կօմային, ու կսկսին ձեռքերով գունդեր շինել ու իրար ետեւէ կուլ տալ առանց ծամելու։ Երբեմն կօմային խմորը կը շաղեն կաթով։ Կօման քրդու ամենայարգի խմորեղէնն է, որով կը հիւրասիրէ ամենաբարձըր հիւրերին։

II. Զէրէվէթ (zerevet) կամ Զարավաթ

(zaravat).—ցորենի ալիւրէ բարակ լաւաշ հացը սաճի վրայ եփելէն յետոյ, քրդուհին մածուն կըշըլէ սխտորչըրով, և ապա մի խորունկ աման դնելով կրակամոխրի վրայ՝ կըլեցնէ նրա մէջ 2—3 գդալ մածուն, որի վրայ էլ կըդնէ մի լաւաշ և գդալով կըտեղաւորէ, որ լաւաշը թրջուի մածնում. ապա նորէն կըլեցնէ մի քիչ մածուն, նորէն մէկ լաւաշ... այդպէս շարունակելով մինչև որ մտադրեալ քանակութեամբ լաւաշն սպառի։ Սխտորչըրած մածունը ծածկած է լաւաշները։ Այնուհետև ամանին տակը նոր կրակամոխիր (մրեզ) քաշելով՝ կըթողնեն որ լաւաշը բոլորովին ծծէ մածունը, որմէն յետոյ մե կողմ կ՚առնեն ամանը, գանակով աղիւսակաձև կըկտրատեն կերակուրը և վրան հալած իւղ ածելով՝ կտրուածքները ծածկելու չափ, կսկսին բռով ուտել արդէն պատրաստ պատուական զէրէվէթը։

III. Բարակ հում լաւաշն է, որ իւղի մէջ կարմրացնելով կըպատրաստուի պի-

շի կոչւող կերակուրը, որ կուտեն ռու-փով (պէքմէզ) կամ մեղրով։

IV. Լաւաշի խմորը բարակցրած՝ պատրաստ է. քրդուհին բաժակի բերանով կլոր-կլոր կըկտրատէ խմորը, նման մեր եկեղեցւոյ մասին և այդ կլորիկ փոքրիկ լաւաշին մէջ կըդնէ մի քիչ՝ փշրած թարմ պանիր կամ իւղով ու սոխով տապակած միս, ու այդ լաւաշին վրայ կըծածկէ մի երկրորդ լաւաշ. երկու լաւաշների ծայրերը, շուրջը, մատով ծալծըլելով կըմիացնէ. այդպէս կըշարունակէ պատրաստել պէտք եղած քանակութեամբ, որմէն յետոյ այդ խմորեղէնները կըտապակեն իւղում ու կուտեն։ Այդ կերակուրը կըկոչւի բէնիլի կամ կոշելի։

V. Տաք ջրում բաւականաչափ աղ դընելէն յետոյ մի քիչ էլ փայտի մոխիր (քիւլ) կըխառնեն հետը և նրա վրայ էլ քչիկ-քչիկ ալիւր լեցնելով՝ կըպատրաստեն այն նոսր խմորը, որմէն քրդուհին դըղալով կըլեցնէ՝ օճաղին վրայ տապակում

հալւող իւղին մէջ, մինչև որ տապակին տակը ծածկուի, բայց մէն մի գդալ խմորը առանձին մնայ, չխառնուի միւսներին։ Խմորները իւղում կըբղըջին ու կըստանան սպունգի ձև։ Լաւ կարմրելէն յետոյ վար կ՚առնեն և նորը կըլեցնեն։ Այդ հետաքըրքիր խմորեղէնը կըկոչուի «խատի լոխմասի» (khadi lokhmassi), որ կը նշանակէ «դատաւորի պատառ»։ Խատի լոխմասին էլ կուտեն «քաղցըրեղէնով»։

VI. Միջին թանձրութեամբ խմորը պատրաստ է և քրդուհին մաղը երեսի վայր պարձրած՝ առած է առջևը. կըկտրէ մի-մի փոքր գունտ խմոր և բութ մատովը կը ճնշէ այդ խմորը մաղի ծակոտիքին վրայ, որով խմորին վրայ էլ կըգոյանան խիտ առ խիտ բշտիկներ. ահա այդ մատնոցանման խմորներն են, որ իւղում տապակելով՝ կունենանք «մաղի վրայ» կոչւող կերակուրը։

VII. Ցեղապետների ապարանքներում

արդէն ծանօթ են փաքլավա և խատէյիֆ կոչուող յայտնի արևելեան կերակուրները, որպէս և ճիմիլան (djimila) որ հայկական ճմուռն է՝ թաժա հացը իւղում թըրջե-լով։

VIII. Զաւարի, կորկոտի, բրնձի և եգիպտացորենի փիլաւ և ապուր։

IX. Մսաչրում սոխը խոշոր-խոշոր մանրելով կ'եփեն եախնի'ն. բայց այդ եախնի կըպատրաստեն շիրիկով, ձէթով, դմակով։

X. Ոչխարի, այծի և հորթիկի ոլոռ-ներով ու գլխով՝ խառն ստամոքսի (շի-րիտա), փորի (իշքէմպէ) և ճարպի ման-րամսի (խըյմա) հետ կեփուի այն համով հոտով կերակուրը, որ կըկոչուի քէլլէ փա-չա (խաշ)։ Կովի, եզան և գոմէշի խաշը կըկոչուի սինկիր (singuir)։

XI. Ոչխարի, այծի և հորթիկի նախ-ճամէջի կամ նախաղի մէջ, լաւ լուալէն յետոյ, կըլեցնեն սոխ, պղպեղ, սև պղպ-պեղ, զանազան կանաչեղէններ և բրինձ.

կամ ձաւար և կ'եփեն մսաջրում։ Դա է հռչակաւոր պուտինկը։

XII. Թարմ քաղցուրն (չիրէ) մէջ ալիւր խառնելով ու եփ տալով կ'ստացուի մալէզը (malés), որ կուտեն վրան իւղ ածելով կամ ձուածեղով և կամ ընկուզով։ Այդ իսկ մալէզէն կըշինեն պաստեղը և ռուճիկը ընկուզով (սուճուղ)։ Մալէզը կըկոչեն քրդերը և այն խիւսը, որ լըզնիի և աղլոց մօտ յայտնի է լանթակ անունով։

XIII. Տութմաճը (doutmadj) ոչ այլ ինչ է, եթէ ոչ հայկական արիշտայի մի քանի տեսակները, որոնցով ամառը կեփեն կամ խաշում տապակելով կուտեն։

XIV. Ոսպով, ճուլպանատով, լոպիով, եգիպտացորենով, սիսեռով և այլ հատիկներով ապուրները սովորական կերակուրներ են, ինչպէս և թանապուրը, կաթը, կաթնապուրը և թանը... Թանը —դա քրդու արիւնն ու ճարպին է. «Տէօվ է թըռուշ, նանէ քօրէկ» (Թթու թան

և կորեկ հաց), դա այն պատուական կերակուրն է քրդու համար, որ նա օրական 10 անգամ ուտելով չի ձանձրանար։ Ապա պէտք է յիշել պանիրը, սերը, եղը, թորախը, խերը, մածունը, զանազան թթուեղէններ, թարխանայ (դդման), թընորիկ կամ քէշկէկը, ևայլն ևայլն, որոնք կըզարդարեն քրդու մշտաբաց և հիւրասէր սեղանը։

XV. Ի վերջոյ յիշենք և Սըլեմանին կամ Սիւլէմանին (sülémani) և համարեա յիշած կըլինիմ քրդական բոլոր կերակրըները։ Սիւլէմանին դեռ նոր տեղացած ձիւնն է, որ վրան ռուփ լեցնելով կուտեն։

Աւելորդ չի լինիր նկատել, որ վերոյիշեալ կերակրներէն շատերը գործածական են և՛ հայերի մէջ։

Ապա երկու խօսք միայն հիւրասիրութեան մասին։ Այդ կողմէն Հայն ու Քիւրդը եղբայրներ են. ինչպէս Տաճկա-Հայաստանցի Հայի, այդպէս և քրդերի սե-

ղանը միշտ բաց է բոլոր պատահական, ծանօթ-անծանօթ, ազգակից և այլազգ, թշնամի և բարեկամ հիւրերի առաջ։

Կարելի է ապրել քիւրդ ցեղերի մէջ ամիսներով առանց մի դահեկան ծախսելու։ Քիւրդը ոչ կրծանձրանայ ոչ էլ կըդժկամակի կամ երես կըդարձնէ հիւրի յարատև ներկայութենէն։

— «Հիւրն իր ուտելիքին չափ լիութիւն կըբերէ հետը», կասէ քրդական առածը, այդպէս և հետևեալները․

— «Հիւրն Աստուծոնն է, չէ կարելի չընդունել»։

— «Աստուած կամ Հրեշտակները երբեմն հիւրի դիմակին տակ կըփորձեն մարդկանց սրտերը․ վայ այն մարդուն, որ չեռ կըդարձնէ Աստուծոյ հիւրերին»։ Այդ և դրանց նման բազմաթիւ առածներ ու աւանդութիւններ կան, որոնց մէջ կ՚արտացոլէ քրդական ցեղերի հիւրասիրութեան բարձր յատկութիւնը։ Բայց այդ երբէք չի խանգարեր, որ իր սուտ հիւրա-

օրրու թիւն գտած մարդը, նոյն հիւրասիրողի ձեռքով կողոպտուի և մինչև անգամ սպանուի, նրա բնակարանէն հեռու տեղերում։

Ի չքուումն ամենայնի առիթէն կօգտուիմ յայտնելու, որ քրդերը թէև, իրր թէ, օրական երեք անգամ կուտեն, բայց իսկապէս քրդուն համար ուտելու ժամանակ է, երբ նա քաղցում է, թէկուզ օրական 10 անգամ։ Քրդերը չեն օրրեր և չունին կենցաղավարական որևէ ծրագիր։ Այս բոլորին նա կուտէ՝ քեզ նման 10 մարդու կշտացնող կերակուր, մի ուրիշ անգամ, ընդհակառակը, նոյն քիւրդը չափէ դուրս ատկաւակեր է։

Այսպէս թէ այնպէս; քիւրդը կուտէ և կըխմէ անգահաբար։

2. Խմելիք.

Քրդերը, որպէս խմիչք կըգործածեն.։ Հայաստանի զուլալ, բիւրեղանման, առատահոս և կենսատու ջրերը, որոնք ամեն մի քարի, ամեն մի թփի տակէն կըղըլ-

գըլա̃ն հեզասահ և քու ախորժակը կը-գըրգուէն։ Ամէն գիւղ ունի իրա պատուական, անմահական աղբիւրները, որոնցմէ վազող մարգարտի անվերջ հատիկները կըպարգևէն քրտերին փառաւոր առող-ջութիւն։

Եթէ քրդուհին կամենայ մի առանձին յարգանք մատուցանել իրա հայ կամ այն հիւրին՝ նրա ոտքերը լուանալէ յետոյ կը-հիւրասիրէ նրան ռուփի ջէրպէթով կամ խուշապի ջրով—մրգաջրով։

Սուրճի գործածութիւնն ընդհանրացած չէ, բայց ոմանց մօտ, և աւելի խոնախ-ներում, կըհանդիպինք սուրճի փոքրիկ-փոքրիկ բաժակներին։ Սուրճը սովորաբար կըխմեն դառը, առանց շաքարի։

## ժ.

# ՀԱՐՍԱՆԻՔ.

### 1. Խաղիրկուն.

Հարսանեաց համար քրդերն ոչ ոքին յատկապէս հրաւէր չեն ուղարկեր։ «Լսողը կուգայ», «ինձ պատուողը կուգայ», ուզողը կուգայ», այսպէս կասէ քիւրդը։ Բայց հարսանիքատիրոջ տնէն հեռւում գտնւող ծանօթ-բարեկամներին «վէնկ տայիշ» (հրաւէր) կանեն։

Հարսանեաց նախնթաց երեկոյեան, երբ հարսնեւորները և մանաւանդ փեսի հասակակից ընկերները հաւաքուած են փեսի տանը, այդ երեկոն կանցնի շատ ուրախ,

*որովհետև ներկաներէն ով ինչ հիւնար ունի՝ պէտք է ցոյց տայ։ Խաղի երեկոյ է այդ, որի համար էլ Բալուջիք կըկոչեն խաղիրկուն։ Էլ ղանազան մարմնամարզական խաղեր, էլ աչքակապութիւններ (կէօզպայճի); էլ խմբական պարեր, էլ կատակներ ու սրախօսութիւններ հազար ու մի տեսակ… էլ ինչե՞ր ասես՝ այդ երեկոյ տեղի չեն ունենար։*

**Տավուլ-զուռնան** *մէկ կողմէն կըքըքըրէ երիտասարդ քրդերի հոգին և կըհրաւիրէ նրանց գիւղի ընդարձակ հրապարակում սուսերամարտութեան։*

**Ղաւալը** *միւս կողմէն հաւաքած է իր շուրջը բաւական ժանրագլուխներին և «ա՜խ»-եր կըքաղէ նրանց սրտի խորքերէն։*

**Տափն ու ղանաղան շւիները** *կանանց կողմն են տիրապետել ու երբ կըծգեն ճահիլ տաքարիւն քրդուհիների կուրծքն ու թևերը։*

**Տուտուկները** *մանուկներին ու պատանիներին են գրաւել մի այլ տեղ, ուր նր-*

բանցմէ իւրաքանչիւրը պէտք է ցոյց տայ իր շնորհքը «տղուտուկ փչելում»։

Աշուղներն էլ իրենց պագերով մատն-ւած չեն անուշադրութեան, նրանք էլ ունին իրենց երկրպագուները, երկու սե-ռերն էլ, որոնք լարուած յափշտակութեամբ անձնատուր են եղել աշուղների բանա-կռիւներին։

Մի բան, որ կըպակասի այստեղ, դա կարգն ու կանոնն է, ներդաշնակութիւ-նը։ Մնացեալ ամենայն ինչ կատարեալ է, ինչպէս կասեն Բալուցիք՝ «մարն զմա-նուկը չի ճանչնար»։ Այդ բոլոր «ուրա-խութիւններին» և նրանց տարնթերակից կերուխումին հաւասարապէս մասնակից է և ինքը փեսացուն։

Այդ գիշեր ոչ ոք քնելու չէ. ասենք՝ եթէ մէկը կամենայ էլ, ոչ մի կերպ չէ կարող գլուխը բարձի դնել այդ բաբե-լոնում։

## 2. Հարսնառ.

Միւս օր կըհաւաքուին բոլոր հարսնեւորները և նախաճաշիկէն յետոյ, երկսեռանհագին մի բազմութիւն, կըդիմեն դէպի հարսի հօր տունը։ Կ՚երթան՝ ձի, ջորի, էշ հեծած, սայլի վրայ նստած և հետիոտըն։ Տավուլ-զուռնան ճանապարհին ականջ կըխլացնէ իրա միապաղաղ անվերջ «խըլըրճ խալխնի» մառշով։ Հետիոտն քալող երիտասարդներէն երկ-երկու հոգի մեծ ոգևորութեամբ կըմենամարտեն սրով ու վահանով, և իւրաքանչիւր զոյգ կ՚աշխատի ուղեկիցների աւելի մեծ բազմութիւն գրաւել իր շուրջը։

Հարսնեւորների առջևէն կ՚երթայ թախտըրավանը։ «Թախտ» կընշանակէ գահաւորակ, ըավան կամ «րեվան»—ճամբայ, և հետևաբար թախտըրավան կընշանակէ՝ ճամբորդական պատգարակ կամ գահաւորակ կամ դեսպակ։ Թախտըրավանը բաւական նման է մեր դիակառքերին։

Վրան ամպհովանի, փուրգոնի ծածկոյթի նման, իսկ ներքեւէն երկու երկայն ձողեր՝ զարդարուած գոյնզգոյն կտորներով (լաթ) ու ծաղիկներով. այդ ձողերի ծայրերին կըլծեն 4 ընտիր ջորիներ, որոնք կըկրեն իրենց գլխին, վզին ու կըծքին վրայ բազմաթիւ բոժոժներ ու զանգակներ։

Փեսի տնէն գնալիս՝ թախտրավանի մէջ կընստի փեսան կամ նրա մայրը և կամ մերձաւոր ազգականներէ մէկն ու մէկը. իսկ հարսի հօր տնէն վերադառնալիս թախտրավանումը կըտեղաւորեն հարսին, «հարսնեղբայրներին» ու «հարսնքոյրերին»։

Հարսնառ գնալիս առնւազն մի քանի տասնեակ սպառազինուած մարդիկ անհրաժեշտ են, որոնք իրենց հրազէնների որոտով պիտի առանձին փայլ տան հարսանեաց այդ հանդէսին։

### 3. Առևանգումն և մերժումն.

Աղջիկ փախցնել կամ առևանդելը քրդերի մէջ խիստ սովորական և պատուաւոր բան է։ Բայց առևանգման էլ զանազան շարժառիթներ կըլինին, որոնցմէ մի քանիսն անհրաժեշտ կըհամարեմ այստեղ յիշել, որովհետև մեր նկարագրութեան ամբողջացումն այդ կըպահանջէ։ Ահա.

I. Եթէ նշանադրութենէն յետոյ երկու խնամիների միջև որևէ անախորժութիւն է տեղի ունեցել՝ զօրեղ պատճառներով, այդ դէպքում աղջկայ հայրը ամենայն իրաւամբ կարող է յետ վերադարձնել փեսի կողմէն վճարուած գլխագնի (պաշլըղ) մասը, որ նշան է իր աղջկայ ձեռքը մերժելուն և մերժելէն յետոյ իրաւունք ունի ուրիշին ծախելու իր մալը։ Սակայն աւելի բարւոք կըհամարւի սպասել՝ մինչև մերժուած փեսացւի ամուսնանալը մի այլ աղջկայ հետ։ Սպասելու առաւելութեան

պատճառները երկու են.—Նախ՝ մանչը ամուսնանալով ուրիշի հետ՝ յոյսը կըկտրէ և աչքը կըհեռացնէ մեր աղջիկէն և երկրորդ, որ աւելի կարևոր է, ճակատագիրը մեր աղջկայ և այդ տղի աստղերը մօտեցուց իրար և մենք մեր կամքով հեռացրինք, արդ՝ մանչուն աստղը ուրիշ մէկի աստղին չ՚միացած՝ անարգարութիւն կըլինի մեր աղջիկը ծախելը, չէ՞ որ մանչը տան սիւնն է, աղջիկը—էլի պատի ծեփ և ծախու մալ։ Ասենք աղջկայ հայրը որոշ չափով պարտաւոր էլ է այդպէս վարւելու, որպէսզի նախկին փեսացուն շատ չիգրգռւի և երկուստեք անհաշտ դրութիւն չ՚ստեղծւի։ Եթէ հնարաւոր է, պէտք է այնպէս վարւել, որ մալը գնողը (փեսացուն) ինքն էլ սառի և աչքաթող անէ նախկին սիրոյ առարկային։ Ապա թէ ոչ՝ մալն աղետաբեր փոթորիկ կըհանէ հօրը գլխին, որ ցանկալի չէ,—կարող է մալի պատճառով կռիւ ծագել երկու կողմերի միջև և վեր-

չանւոյլ բազմաթիւ կեանքերի կորուստնե-րով ու հիմը ձգել ժառանգական թըշնա-մութեան—վրէժխնդրութեան։ Հակառակ դէպքում, նախամեծար համարելու է, եթէ փեսացուն ողջաղ տղամարդ է, դայ ու առևանգէ մայրին և այդպիսով վերջ դնէ քրոնիքական վէճին։ Վերջին դէպքում փեսացուին անհրաժեշտ են սպառազինուած մարդիկ։

II. Երբ քիւրդ տղամարդը կըսիրէ այս կամ այն քրդուհուն, որի ծնողքը սակայն հակառակ են նրանց ամուսնութեան, այդ դէպքում տղամարդը իր համախոհներով պէտք է յարձակւի աղջկայ հօր տանը վրայ և փախցնէ իր սիրած աղջկան, որի ժամանակ նոյնպէս սպառազինուած ոյժե-րի անհրաժեշտութիւն կ՚զգացւի։

III. Ենթադրենք որ Ալին ժառանգա-կան կամ մասնաւոր թշնամութիւն ունի Օլիին դէմ, որը մի գեղեցկուհու հետ նը-շանուած է և շուտով պիտի ամուսնանայ. դու պէտք է չանաս ամեն կերպ, Օլիէն

վրէժ լուծելու համար, «յափշտակել» նրա սիրուհուն՝ կամ ուղղակի հօրը տունէն և կամ. հարսնառի ժամանակ, երբ աղջկան իր հօր տնէն առած՝ կըվերադառնալ Ոլին։ Յաճախ կըպատահի, որ առևանգման միջոցին սոսկալի կռիւ կըծագի մէկէ աւելի ցեղերի մէջ և տեղի կուտայ սոսկալի արիւնահեղութեան։ Առևանգւողը շատ անգամ կըլինի հայ, ասորի կամ մի այլ քրիստոնեայ ժողովրդի աղջիկ կամ հարս, որի համար էլ նոյն դալմաղալները տեղի կունենան։

IV. Աղջկայ ձեռքը կըգլ՚ոցւի և՛ այն պարագայում, երբ փեսացուն չ՚կարողանայ որոշեալ պայմանաժամին վճարել աղջըկայ գլխագինը, որ կըլինի դրամ կամ ընտանի կենդանիներ, զէնք, վարելահող ևն ևն։

4. Խալաթ և Տիտղոս.

Ենթադրելով որ վերոյիշեալ անախորժութիւններէն և ոչ մի գոյութիւն չու-

նի՝ մենք մեր ընթերցողներին հետ հե-
տևենք մեր հարսնևորների ընթացքին, որ
տավուլ-զուռնայով ու նկարազրուած բազ-
մութեամբ կըդիմեն դէպի աղջկայ հոր
տունը։

Եթէ երկու խնամիների բնակավայրերի
միջև կան ուրիշ գիւղեր, աւաններ, եայ-
լաղներ, օպաներ... հարսնևորները կանգ
կառնեն այդ տեղերում և շնորհակալու-
թեամբ կընդունին տեղացիների մատու-
ցած ուտելիքն ու խմելիքը՝ հարսնևոր-
ների համար և խալաթը (հագուստեղէն,
զէնք, զարդ, գորգ ևն) փեսացւի և հար-
սի համար։ Յաճախ երբ փեսացուն կամ
խալաթ տւողը ցեղապետի տնէն են, խա-
լաթը կըլինի թանգանոց, օրինակ․ մի
զոյգ ջորի սիրուն թամբերով զարդար-
ուած, կամ նժոյգ։ Կըպատահի որ փեսա-
ցուն թէև մարապալար դասէն է, բայց
քաջութեան պատճառով սիրուած ցեղա-
պետէն, երբ կ՚անցնին վերջնի տան մօտէն՝
ցեղապետը դուրս կուգայ պատշգամբ և

կըշնորհէ փեսայփն օրնէ տիտղոս՝ անուանելով նրան «պէկ», «աղա», «միր» ևն։ Իսկ եթէ հայ է փեսացուն և արժանի սեպուած այդպիսի բարձր շնորհի՝ ցեղապետը իր ձեռքով կըփաթաթէ նրա ճիտը կարմիր լաթ և կանուանէ «մելիք»․ որպէս կըկոչւին նրանք մինչև իրենց մահը։

5. Հարսի հօր տանը և վերջին գնումն հարսի.

Հարսնևորներն աղջկայ հօր տանը մօտենալիս՝ միաժամանակ կարձակեն բոլոր հրացաններր․ վառօդի ծուխը թանձր ամպի նման կըպատէ խնամու տունը․ չ'անցած 2 րօպէ՝ կըկրին կ'որոտան հրազէնները, և այս անգամ աղջկայ հօր կողմէն էլ 1, 2 կամ 3 հրացան կարձակեն, որ կընշանակէ թէ «պատրաստ ենք ընդունելու» (նշան սիրոյ և խաղաղութեան)։ Իսկ եթէ աղջկայ հօր կողմէն չ'պատասխանեն եկւորների կրկին հրացանաձգութեանը, լուռթիւնը նշան է

արիւնահեղութեան, ապացոյց որ աղջիկը տալու միտք չունին։ Մի կողմ թողնելով այդ պարագան, որ ամեն ինչ կախուած կըլլինի բացառապէս զէնքերի շնորհքէն, ես կըշարունակեմ նկարագրութիւններս հանդարտ եղանակով, երբ լռութեամբ չեն պատասխանած։

Հարսի հօր կողմէն արձակելով 1—3 հրացան՝ կըփութան խմբովին դիմաւորել խնամի-հարսնեւորներին, դեռ տուն չհասած։ Ահա այդ միջոցին միայն արդէն իսկական. հարսանիքն (vèïva—вейва) ըսկսած կըհամարեն երկու կողմէն։

Ապա ընդարձակ հրապարակի վրայ, երկու կողմի բազմաթիւ հարսնեւորները կըկազմեն մի մեծ օղակ, որի կենդրոնումը կընուագէ տավուլ-զուռնան և երկու խնամիների կողմէն. մէկ-մէկ կամ երկ-երկու հոգի, մերկացրած սըերով ու վահաններով, կսկսին մրցիլ։ Այդ գործողութիւնն անպայման կըկատարուի և այն պատճառաւ, որ իբր թէ փեսի կողմէն հրապա-

րակ եկողը վճռել է զէնքի ուժով խլել դիմացինի Թանկագին ապրանքը—մալէվայր կամ մալէպան—աղջիկը։ Այդ նշանակալից ու հետաքրքիր մենամարտուԹեան ականատես վկայ է և փեսան, որ երբեմն չի քաշուիր խրախուսական բառերով դիմելու իրա կողմնակցին (սովորաբար եղբօրը կամ հօրեղբօրորդուն)․—Ապա, իմ քաջ, երեսս ճերմակ պահէ, տակը չի մնաս։ Սրբագործուած սովորուԹիւնների կարգն է անցած այդ գործողուԹիւնը, բայց ես մի անգամ Ալխատխանում ականատես եղայ աղջկայ կողմի մենամարտողի սպանուելուն, ոգևորուԹեան միջոցին փեսի եղբայրը սրով ճղեց հակառակորդի գլուխը։ Սակայն զարմանալի բան, այդ սպանուԹիւնը մազաչափ անգամ փոփոխուԹիւն առաջ չի բերեց իրերի դրուԹեան մէջ, ու դեռ ընդհակառակը, խնամիները քաջալերական բացականչուԹիւններով մի ուրիշին հրաւիրեցին հրապարակ շարունակելու իննոգի գործը։ Այ-

նուամենայնիւ միշտ կաշխատին, երկու կողմէն էլ, որ այդ խաղը վերջանայ առանց արիւնահեղութեան։ Իսկ մեծաւ մասամբ կըվերջանայ մարտը աղջկայ կողմի պարտութեամբ։

Հակառակ դէպքում, եթէ երկու կողմըն էլ յամառութեամբ շարունակեն մըրցութիւնը՝ մնալով երկուսեք անպարտելի՝ այդ դէպքում փեսի հայրը կամ հօրեղբայրը առաջ կանցնի և կըգոչէ.

— Պէ՛ս է, լօ՛ (bèssé, lo!) կամ պէննու լիա՛ (bennou lia!), որ կընշանակէ՝ բաւէ! Ապա կըդադարի մենամարտը։

Այնուհետև սավլուլ-ղուռնան էլ—ի մեծ ուրախութիւն քո անբաղդ ականջների—կըկտրէ իւր ձայնը։ Փեսի հայրը աւելի առաջ անցնելով՝ կըխօսի.

— Է՛յ, տօսթի, քէյնէ էղեօ պռօշը մըն (éy, dosti, kèïnè éteu broche men)—Այ խնամի, ծախիր ինձ աղջիկդ։

Անմիջապէս առաջ կանցնի աղջկայ հայրն էլ և բոլոր հրապարակի կենդրո-

նում երկու խնամիները կսկսին մի զաւեշտական, ծիծաղաշարժ սակարկութիւն։

ա. Եթէ փեսան մինչև այդ ժամանակ վճարած է բոլոր պաշլըղը՝ այդ դէպքում աղջկայ հայրը, որպէս գին իր աղջկայ, կըպահանջէ մի խիստ անչափ գումար, օրինակ. «տըղօլօթա» կամ 60 փարա կամ 12 կոպէկ։

Փեսի հայրը կըզարմանայ այդ «չի լսած, չ'եղած թանկութեան վրայ» և իր կողմէն կառաջարկէ 5 փարա—1 կոպէկ։ Կըբարձրանայ ամբոխային ընդհանուր քրքիջ, կըլսեն այս ու այն կողմէն բացականչութիւններ, երկարատև ծիծաղ...

Ի վերջոյ զաւեշտաբան սակարկողները կը հանգին մի եզրակացութեան և սակարկութիւնը կըվերջանայ։

բ. Եթէ փեսան դեռ չէ վճարած պաշլըղը կամ նրա մի որևէ մասը, այդ սակարկութեան մէջ, որ կըտարւի էլի ծի-

ծաղաշարժ տոնով, հարսի հայրը կըպահանջէ խնկապէս խիստ բարձր գին, մինչև որ երկուստեք զիջելով՝ հասնին փեսի պարտքի չափին, որ և կըվճարէ փեսի հայրը հէնց այստեղ։

Սակարկութեան հանդէսը վերջանալէ յետոյ բոլոր հարսնեւորները կըդիմեն աղջըկայ հօր տունը, ուր կըմնան մի քանի ժամ, երբեմն մինչև 2—3 օր և այդքան ժամանակի ընթացքում կերուխում, խաղ ու պար, զանազան օյիններ ու սրախօսութիւններ կըծառայեն որպէս ուրախ ժամանց։

### 6. Հրաժեշտ և մի հին սովորութիւն.

Երբ հարսը հագնուած-զուգուած է, մոլլան կամ սէյիտը կըմտնի կանանց մէջ և հարսը մէջտեղ կայնեցնելով՝ կասէ մօտաւորապէս հետևեալը.

— «Աստուծոյ հրամանով, մարգարէների օրէնքով, ամուսնացուների ծնողաց

համաձայնութեամբ և ճակատի անեղծանելի գրով մեր աղջիկն այսուհետև պատկանելու է այսինչ խնամիի այնինչ որդուն»։

Ու կրկարդայ հարսի գլխին մի երկար օրհնութիւն։

Ապա կանցնի տղամարդոց կողմը և կրկրկնէ նայնն ու կրվերջացնէ մօտաւորապէս հետևեալ բարեմաղթութիւնով.

— Խնամի, մեր աղջիկը գեղեցիկ է՝ քան ծէյրանը, անուշ է՝ քան մեղրը, ազնիւ է՝ քան աղաւնին, հեզ է ու խոնարհ՝ քան գառնուկը… այդ թանկագին մալը, որ մեր աչքում հաւասար է աշխարհի արժէքին, մենք ծախեցինք քեզ, որ նա դառնայ քո տան զարդերի ամենագլխաւորը և ամենապատուականը… Հայդէ՜ (օ՜ն), Աստուած բաղդաւոր մալ անէ, խէրը տեսնես ու բարի պտուղը վայելես… Ժողովուրդ, ասէք «ամէ՜ն»։

Բոլոր ժողովուրդը միաբերան կրգոչէ ու կրկրկնէ «ամի՜ն»։ Այնուհետև համ-

բուրելով փեսի և նրա հօր ու մօր. կամ մերձաւորների ուսերը՝ ամենքը կըշնորհաւորեն զանազան բարեմաղթութիւններով, որմէն յետոյ կընստին «Հրաժեշտի ճաշկերոյթ» (Ըրխըլ կիթ շօրպասի կամ Ըրգըլ կիթ չօրպասը) կոչուող սեղանը։

Փորերն էլ կշտացնելէ յետոյ դուրս կուգան խնամու տնէն։

Երբ հարսը կընստեցնեն թախտրավանին մէջ՝ բոլոր հրացանակիրները միանգամէն կարձակեն իրենց հրազէնները և այդ իսկ րոպէին փեսի հայրը մի քանի բուռ պղնձէ կամ արծթէ դրամներ կըսրսկէ թախտրավանին վրայ։ Աղքատները կըհաւաքեն դրամները։ Կարողութիւն չունեցողները դրամի փոխարէն կըսրսկեն չոր միրգ ու սիսեռ, որմէն յետոյ կըմեկնին հարսնևորները. բայց դու պաշարուած ես մի նոր զգացմունքով, որովհետև չէիր կարող կարծել, որ հայկական մի ամենահին սովորութիւն այդպիսի հարազատութեամբ պահպանել է

հայի. արեան ծարաւի քրդերի մէջ... Մը-տաբերի՛ր Արշակունի Արտաշէս արքայի հարսանիքը և Գողթան երգիչների երկու հրաշալի տողերը.

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն
Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեանն
Սաթինկան»։

Մինչդեռ այդ սովորութեան հետքերը մեզանում չ՛կան...

### 7. Ջոհաբերութիւն.

Վերադարձին նոյն աղմուկն ու կենդանութիւնը կըտիրէ հարսնեւորների մէջ, մինչև որ կըհասնին փեսի տունը և վերջինի ազգականներէն կընդունին մրգեղէններ ու խալաթներ։ Երբ թախտրավանը կըկանգնի փեսի տան դրան առջև՝ կ՛որոտան հազարաւոր հրացաններ, վերջին անգամը լինելով։ Այնուհետև կսկսի զոհաբերութեան գործողութիւնը։ Թախտրավանին առջև կըզոհեն խոյեր, ա-

րու հորթ, զանազան թռչուններ (նոյնպէս արու), մինչև անգամ և եզ, գոմէշ, որոնցով կըկերակրուին թաղի կամ գիւղի աղքատները։ Ջոհաբերութենէն յետոյ հարսը կիջեցնեն թախտրավանէն և առօք-փառօք կըտանին ներս։ Սոէպ, փեսի տան դռնէն ներս մտցնելիս հարսի գլխին կրկին կը սրսկեն դրամ և միրգ։

8. Առագաստը և նրա պահապանները.

Մինչ հարսնևորները կուտեն, կըխմեն, կըխաղան... անդին առագաստը կըպատրաստւի հարսի հօրը (որպէս իր աղջկայ օժիտը) նւիրած կահ-կարասիներով ու զարդարանքներով, նոյնիսկ պղնձեղէն ամաններով ու կար ու ձևի պարագաներով։ Իսկ ամբոխի մէջ կը լսւի.

— Հարսն ու փեսան յոգնած են, հանգըստութեան կարօտ են։ Մի քանի ձեռեր կըպատասխանեն.

— Հայդէ՛, հարսն ու փեսան թող առանձնանան մի քիչ։

Այդ ատեն նորագոյգը (հարսն ու փեսան) կըմտնին առագաստ (ճիպինլուխ— djibinloukh) ամբոխին թողնելով շարունակւող զւարճութեանց մէջ։

Փեսի հայրը, նորագոյգի առագաստ մտնելէն յետոյ, դըսէն կըկողպէ դուռը և կըհրամայէ ոտքէ գլուխ սպառազինւած երկու երիտասարդների, որ սուսերամերկ կանգնին առագաստի դրան երկու կողմը որպէս պահապան, որպէսզի՝

ա. Անպարկեշտ, հետաքրքիր աչքեր չ'կարողանան որևէ ճեղքւածքէ դիտել ներսի անցուդարձը։

բ. Դրան մօտ ղալմաղալներ, բարձր խօսակցութիւն (մանաւանդ առագաստի վերաբերմամբ), երգ ու պար և առհասարակ որևէ աղմուկ չ'լինի։ Պահապաններն իրաւունք ունին նոյն իսկ սպանելու այդ կանոնների դէմ գիտակցաբար գործողներին։

գ. Դաւադրութիւն չխարքւի հարսի կամ փեսի կեանքին դէմ։ Կըպատահի, որ փե-

մի կամ հարսի անձնական թշնամիները խորամանկութեամբ, որպէս հարսնևոր-ներ, ներս մտած և այդ մոմենտին սպա-սած կըլլինին՝ «առագաստն հարամ անե-լու մտօք»։

դ. Ճիները (դևերը) հակառակ են ա-ռագաստ մտնողներին և բաց դուռ կը-փնտռեն ներս մտնելու և հարսին խըղդե-լու համար. պահապանների ներկայութիւ-նը կըսանձահարէ նոյնիսկ ճիներին։

### 9. Զուգաւորութիւն.

Շատ չ՚անցած՝ փեսի ձայնը կազդա-րարէ «պատուոյ պահապանների» (խօլէ ըրզան—kholè erzan) արձակումը. այդ նը-շան է, որ տեղի է ունեցել անդրանիկ սեռական յարաբերութիւնը։ Եւ կըբաց-ւին առագաստի դուռն ու պատուհան-ները։ Նախ դուրս կուգայ փեսան, ապա կինը։ Փեսան կըդիմէ դրան մօտ հաւաք-ւած ժողովրդին և ձեռքը կրծքին դընե-լով՝ կասէ մեկին շեշտերով.

— Ալլահ իշխուն վաննան քի, ժընէ էմա քէյնէ պիր (կերդուիմ յանուն Աստուածոյ, որ իմ կինը կոյս էր)։ Կամ.

— Խօտէ պըզանը ու տըպէժըմ քի ժըն էմըն լթէմուզ գէջէ է (Աստուած գիտէ և ես կը փկայեմ (կըհաստատեմ), որ իմ կինը մաքուր կոյս աղջիկ էր)։

Այդ ազդարարութենէն անմիջապէս յետոյ 1—2 պատուաւոր մարդիկ ծի կընստին և քառատրոփ կըսլանան դէպի հարսի հօր տունը, աւետիս տալու ամենեքին, որ՝ —Գէջէ էվան ուէ սըբի պու (ձեր աղջիկը ճերմակերես է), կամ. «Քէյնէ էղի հալալ նան փօրտ ու». (ձեր աղջիկը հալալ հաց է կերեր։

## 10. Բերանբացէք.

Նախ քան կուսութեան և խախտածութեան մասին խօսելը անհրաժեշտ կըհամարիմ երկու խօսք ասել բուն առագաստային կեանքի կամ «բերան բացէքի» մասին։

Երբ զոյգը կըմտնի առագաստ՝ փեսան կըհանուի և կըփռռձէ պառկիլ։ Իսկ հարսը, առաւօտուց խրտտուած իր մօրմէն, լուռ ու անտարբեր կուչ կուգայ մի անկիւն։ Փեսան կառաջարկէ նրան 2—3 անգամ՝ գալ-պառկիլ, սակայն մերժումն կստանայ։

Հարսը ամաչկոտ է, կըքաշուի, մինթէ կարելի է օտար տղամարդուն մօտ պառկիլ, ինչ կասեն Աստուած և մարդիկ... Թէև այդ տղամարդը գնել է հարսին նրա հօրմէն, բայց առքը դեռ կատարեալ չէ. պէտք է գլուխ պաշ էլլի (հարսի հօր փեսացուն. չ՚պէտք է մոռանալ, որ մինչև այդ բոպէն հարսը դեռ ժըն, ժէօն—էին չի կոչուիր, այլ «աներոջ աղջիկ», իսկ փեսան կըկոչուի աղջկայ կողմէն «նորս փեսացուն») կըկին գնէ իր հարսնացուն հէնց իրմէն։

Ինքնավստահութեան հետաքըրքիր այդ մոմենտին փեսան, վերջին անգամը լինելով, կըխնդրէ հարսնացուէն.

— Պէյլընէ պաշ էմըն, որը՝ ռաքնը

լէ ժը մը՛րմ *). կամ—Թէյնէ՛լէ խալ էմա, պէ՛, ռաքօ էթիա **)։

Հարբը իր որոշման մէջ անդրգուելի կը-մնայ—չի յանձնուիր օտար տղամարդուն —և միշտ խոյս կուտայ։ Այդ հետաքրքր-քիր սովորութիւնը (ինքնապաշտպանման ձևականութիւնները) հետզհետէ կարծէք տեղի կուտայ մի աւելի պարզ ձևի, որ մեր գաւառաբարբառներում կրկոչուի՝ բե-րանբացէք, համտեսի պախշիշ, էռչի քիշերւայ պռատիկյ, բեյնի բանողչէք, էտի առջի առուտուր ևն։

Փեսան այս անգամ իւր հայալ ամուս-նուն գնելու համար պէտք է նրան նուիրէ, անմիջապէս, մի որևէ ոսկեղէն կամ ար-ծաթեղէն զարդ (մանեակ, ապարանջան, օղեր, մատանիք, փարսակալ ևն). եթէ այդ միջոցին չունի կամ աղքատ է՝ կը-խոստանայ որևէ հագուստեղէն կամ զար-

*) Իմ Հօր Հարս, ե՛կ, ննջի՛ր ինձ Հետ։

**) Դուստրդ իմ աներով, եկ, ննջի՛ր պյստեղ։

պեղէն. խոստացուած իրը գնելու որոշ պայմանաժամ չի դրւիր, որովհետև փոխան իւր խոստումը կատարելու համար կերդւի իր և կնոջ արևով։

Այդ սակարկութիւններէն յետոյ—հարսը կըյածնւնի...

Այն ամեն դէպքերում, երբ. ա. աղջիկն օրինաւոր ճանապարհով է հարսնացած. բ. բռնի խլւած հօր տնէն. գ. գայլտնի փախցըրած—առևանգած է. դ. անձնական կամ ցեղային թշնամու ձեռքէն յափըշտակւած,—միշտ առագաստային ձևականութիւններր միևնոյնն են։

11. Կուսութիւնը խախտած հարսը և նրա վիճակը.

Արդէն շատ հազւադիւտ են այնպիսի դէպքեր, երբ քըրդուհին դեռ չ'ամուսնացած՝ կորցրած լինի իւր կուսութիւնը, իսկ եթէ երբէք հազարէն մէկ լինի էլ խախտած՝ փեսան իրեն թոյլ չի տար հրապարակ հանելու այդ «ոչ-մարդկային», «անբնական», «գազանային», «էշիրի

պատուին սազ չեկող» են են եղելութիւնը։ Այդ դէպքում փեսան կըհամակւի վերին աստիճանի անզուսպ վրէժխնդրութեան ծարաւով դէպի ամուսինը և եթէ ցեղակից չէ՝ նաև դէպի նրա ցեղակիցները, որով վերջ իվերջոյ տեղիք պիտի տրուի արիւնահեղութեան։

Հարսի կուսութեան խախտուած լինելը հրապարակաւ կարտայայտուի այն դէպքերում միայն, երբ հարսն առևանգուած է փեսի թշնամու. աներոջ տնէն կամ յափշտակուած հարսնառ միջոցին հէնց թշնամիէն։ Այդ դէպքում փեսան դուրս կուգայ առագաստէն լքուած, գլխիկոր, սաստիկ վրդովուած և կըներկայանայ հասարակութեան հետևեալ խօսքերով.

— Քանի որ Աստուծոյ հրամանով, մարգարէների օրէնքով, մարդոց խօրհրդով ու իմ կամքով եղած ամուսնութենէն յետոյ ես այդ աղջկայ մօտ կուսութիւն չ'գտայ,—ահա ձեր ամենի ներկայութեանը կըխայտառակեմ այդ կնոջը, որ ինձմէն ա-

տաշ ուրիշին է պատկանելիս եղել, կը-նայտառակեմ և թալաղս (ամուսնական կապ) արձակելու համար կրնետեմ քարս։

Եւ առնելով 1—3 քար՝ կրշպրտէ հե-ռուն, կրթքէ այն կողմը և մեկին շեղ-տերով ու բարձր ձայնով կաւելացնէ

— Ինչպէս որ այդ քարերն ինկան ինձմէ, նոյնպէս և այդ կինը արձակուած է ինձմէ, նա իմ կինը չէր և չէ։

Էլ այնուհետև Աստուած միայն գիտէ դժբաղդ կնոջ քաշած անարգանքն ու չարչարանքները։ Կրմերկացնեն նրան իւր հարսնութեան զարդերէն, ածուխով կը-սևացնեն երեսը (կամ որևէ սև ներ-կով), կրթքեն երեսին, նոյնիսկ նրա հետ եկած «հարսնեղբայրներն» ու «հարսըն-քոյրերը» կանեն միևնոյն բանը, կրհայ-հոյեն ու խիստ անպատիւ խօսքեր կը-շըպրտեն նրա, նրա հօրը, մօրը, ցեղա-կիցների և ազգականների հասցէին և այլն և այլն։ Քրդական թաթի ապտակը, եր-կաթէ բռունցքի համն էլ կըտեսնէ խեղճ

կինը… իվերջոյ՝ ոտքերը բոպիկ, գլուխը մերկ, խայտառակուած ու աղտի մէջ կորած, երբեմն և արնաշաղախ—նա ստիպւած է հեծնելու էշի վրայ՝ հակառակ դիրքով և էշի պոչը, որպէս սանձ, ձեռքին բռնած, աղմկող ամբոխի ուղեկցութեամբ, պիտի շրջի գիւղին մէջ…

Նրան տեսնողները կանիծեն «սատանի ծնունդը»։

Ի լրումն ամենայնի, իբր վարակիչ ախտ, կըվռնտուի հարսը փեսի տնէն և նրա բընակած գիւղէն…

Նա այնուհետև դատապարտուած է մշտնջենական անարգանքի և մինչև մահ պէտք է մնայ իր հօրը տանը, ուր նոյնպէս չափէ դուրս կըզզուին նրանէն և կըծեծեն, կըտանջեն ու ամեն օր, ամեն րոպէ կըյիշեցնեն իր մեղքը…

Մահը միայն կարող է փրկել դժբաղդ արարածին այդ անտանելի կացութենէն!

12. Անպարտ զոհեր.

Վերև նկատեցի ես, որ խախտածութեան դէպքերը շատ հազւագիւտ են. բայց նոյնիսկ այդ դէպքերէն ոմանք արդիւնք են անխիղճ, անաստուած վրէժխնդրութեան, որով անմեղ քրդուհին բարոյապէս կըմահանայ:

Քիւրդը կամենալով ամենածանր վրէժ լուծել իր թշնամիէն՝ կըհամարձակւի այդպիսի եղանակով արատաւորել նրա պատիւը. նա կըգործէ այդ գազանութիւնը—զարհուրելի զրպարտութիւն, որով գիտակցաբար կընահատակէ նա մի անմեղ կոյսի, յայտարարելով նրան խախտուած!

Եւ՝ ոչ մի իրական միջոց չի գործադրըւէր փեսայի ասածն ապացուցանելու կամ հերքելու համար:

Ձեր հարցին, թէ ի՞նչպէս կարելի է առանց անհերքելի ապացոյցների հաւատալ մի-միայն փեսի լոկ երկու խօսքին

ու կնոջը այդ դրութեան հասցնել, քիւրդը կըպատասխանէ.

— Այդպիսիների համար դատավարութիւն չէ կարող լինել. բայց թէ փեսի ասածն ուղիղ է--դրան պէտք է անպայման հաւատալ, որովհետև մի այդպիսի զըպարտութեամբ փեսան կըշարժէ Ալլահի բարկութիւնը թէ իր և թէ իրա տոհմին վրայ։

## ՎԵՐՋ Ա. ՀԱՏՈՐԻ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ.